# ԶԱՆԴԻՈՆ ԵՒ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԵՒ

## ՆՑ ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՑԻՆ-ԻՐԱՒԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ


ԳՐԵՑ

Կ. ԳԻՒՏԵՐԲՈՔ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆԷ ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ՀՄԱՅԵԱԿ ՀԱՄՊԱՐԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1911.




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Առաջիկայ ուսումնասիրութիւնս Յուստինիանու եւ անոր անմիջական նախորդներուն եւ յաջորդներուն, ուստի յէականս Զ. դարու պատմութեան կը վերաբերի:

«Բիւզանդիոն եւ Պարսկաստան»[1] արդէն մասնանիշ կ'ընէ անոր կարեւորութիւնը Հայոց պատմութեան համար: Երկու մեծ պետութեանց մէջ միջնորդող երկիրն ըլլալով Հայաստան, հարկ էր, որ միշտ անոնց հետ շփուէր եւ անոնց փոփոխ յարաբերութեան ազդեցութեանց ենթակայ ըլլար: Այս պատճառաւ ալ իր պատմութեան որոշ մէկ շրջանը միշտ կախում ունեցած եւ գրեթէ խառնուած է, մէկ կողմանէ հռովմէականին եւ ապա յաջորդ բիւզանդականին եւ միւս կողմանէ պարթեւականին եւ յետոյ ապա պայազատ պարսկականին հետ: Այս անձուկ յարաբերութեան հետեւութեամբ երբ երկու դրացի մեծ պետութեանցս պատմութեան մանրամասնութիւնք լուսաւորուին, նոյնին իսկ ընդհանուր չափով լուսաւորուած կ'ըլլայ Հայոց պատմութիւնը: Այս մտքով է, որ արժանի եւ պատշաճ համարեցանք այս գեղեցիկ աշխատութիւնը ամբողջական թարգմանութեամբ ծանօթացընել:

Գործս մաս առ մաս լոյս տեսած է նախ «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ (1908–1910), որմէ արտատպելով այժմ կը յուսանք թէ աւելի ընդարձակ շրջանի մատչելի կ'ըլլայ:

ԹԱՐԳՄԱՆԻՉԸ

---

[1] Գործոյս գերմ. տիտղոսն է. Byzanz und Persien in ihren diplomatisch - völkerrechtlichen Beziehungen im Zeitalter Justinians von Dr. Karl Güterbock. Berlin 1906.

# ԱՂԲԻՒՐՆԵՐՈՒ ՑՈՒՑԱԿԸ

## Ա. ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆՔ

Եթէ ուրիշ կերպ նշանակուած չէ, Բոննի հրատարակութիւնները — Corpus scriptorum historiae Byzantinae ժողովածոյքին մէջ տպ. Բոն 1828 եւ յջ. տար. — գործածուած ու յառաջ բերուած են։ Փակագծի մէջ առնուած թուանշանները երեսահամարներն են։

1. Պրոկոպիոս ա) Վասն պատերազմաց, Ὑπὲρ τῶν πολέμων. (ՊՊ — Պարսկական պատերազմ, ԳՊ = Գոթական պատերազմ[1]։ բ) Վասն շինութեանց, Περὶ τῶν κτισμάτων, գ) Ἀνέκδοτα.

2. Պետրոս (Պատրիկիոս) Ἱστορίαι հատուածները Կ. Միւլլերի հրատարակութեան մէջ, Fragmenta historicorum Graecorum, Պարիզ 1885, Դ. (հմմտ. ՀՑՊ)։

3. Ագաթիաս Սխոլաստիկոս։

4. Յովհաննէս Լիդոս, De magistratibus գրութիւնը։

5. Մենանդրոս Պրոտիկտոր, Τὰ μετὰ Ἀγαθίαν գրութեան հատուածները առ Կ. Միւլլերի, ՀՑՊ. 4.։

6. Թէոփանէս Բիւզանդացի, անդ։

7. Յովհաննէս Եպիփանեցի, անդ։

8. Յովհաննէս Մալալա, Χρονογραφία.

9. Թէոփիլակտոս Սիմոկատտա, Ἱστορίαι, հրատ. Բոորի (de Boor), Լայպցիգ 1884։

10. Զատկական Ժամանակագրութիւն (Chronikon Paschale).

---

1 J. Hauryի հրատարակութիւնը, Լայպցիգ 1905, քանի մը գիրքի մէջ միայն համեմատուած է։

11. Թէոփանէս (Խոստովանող, ὁμολογητής), Χρονογραφία, հրատ. Բոորի, Լայպցիգ 1883—85։

12. Կոստանդին Պորփիւրոգենէտոս, Մեկնութիւն արքայական կարգաց, Ἔκθεσις τῆς βασιλείου τάξεως, de caeremoniis aulae byzantinae.

13. Գէորգ Կեդրենոս, Ծաղկաքաղութիւն պատմութեանց, Σύνοψις ἱστοριῶν.

14. Յովհաննէս Զոնարաս, Համառօտութիւն պատմութեանց, Ἐπιτομὴ ἱστοριῶν.

## Բ. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՐՔ

1. Եւսեբիոս, Վարք Կոստանդիանոսի, հրատ. Դինդորֆ, Լայպցիգ 1867 եւ յջ. տար.։

2. Սոկրատէս, հրատ. Husseyի, Օքսֆորդ 1853։

3. Սոզոմենոս, հրատ. Husseyի, Օքսֆորդ 1860։

4. Թէոդորետոս, հրատ. Gaisfordի, Օքսֆորդ 1854։

5. Եւագր. հրատ. Bidezի եւ Parmentierի, Լոնդոն 1898։

## Գ. ՈՒՐԻՇ ԱՂԲԻՒՐՆԵՐ

1. Ամմիանոս Մարկելինոս, հրատ. Գարդթհաուզենի, Լայպցիգ 894։

2. Պրիսկոս Պանիտէս, Ἱστορία Βυζαντιακή, հատակոտորք առ Միւլլերի, ՀՅԳ. 4։

3. Ագաթանգեղոս, առ Լանգլուայի, Collection des historiens anciens et modernes de l'Arménie, Պարիս 1867, Հատոր Ա։

4. Ֆիրդուսի, Շահնամէ, թարգմանութիւն J. Mohlի. Le livre des rois. Հատոր Զ. եւ Է. Պարիս 1877։

5. Աբու Ջաֆար Մուհամմէդ իբն Ջարիր, անուանեալն Տաբարի, Ժամանակագրութիւն, թարգմանեալ եւ մեկնաբանեալ ի Թ. Նէօլդեկէ, Լայդէն 1879։

---

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԲԻՒԶԱՆԴԻՈՆ ԵՒ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*Երրորդ դարուն առաջին կիսուն, ըստ մեր հաշուին, Արեւելքի մէջ հռովմէական պետութեան համար ծանր հետեւանք յառաջ բերող յեղափոխութիւն մը տեղի ունեցաւ։ Պարսկաստանի մէջ Արշակունեաց պարթեւ հարստութիւնը ինկաւ եւ զայն փոխանակեց Սասանեանց իշխանութիւնը, տիրելով Իրանի համօրէն գաւառաց, Պարթեւական վատթարած պետութեան տեղ՝ կանգնեցաւ հուժկու նոր-պարսկականը, որ առաջին վայրկեանէն իսկ թշնամի հակառակորդ դարձաւ Հռովմայ, ըստ որում՝ այժմ ազգային ու կրօնական զարգացումն առաւել յառաջ գացած էր եւ Աքեմենեանց աւանդութեանց ու մեծամեծ գործառնութեանց հետ կապուած կը համարուէր պարսկականը։*

*Սասանեան հարստութեան արքայից արքաները չորս դարէ աւելի անմիջական դրացի էին հռովմէական կայսերաց. բայց չնայելով երկու տէրութեանց մերձաւոր քաղաքական ու տնտեսական յարաբերութեանց, որ երկուքին ալ առանձնայատկութեանց ճշդագոյն ճանաչողու-*

թեան եւ գնահատման պատճառ կրնար ըլլալ. երկու ազգերուն մէջ սերտագոյն բարեկամական յարաբերութիւն հաստատելու գրեթէ չձեռնարկուեցաւ։ Ինչպէս Յունաց, նոյնպէս Հռովմայեցւոց աչքին առջեւ Պարսիկները միշտ օտար, միշտ բարբարոս, անոնց մտաւոր մշակութիւնը խեղճ, բարոյքը, սովորութիւնները եւ կրօնական հայեցողութիւնները անհանճարական, այլանդակ, եթէ ոչ գարշելի եւ խորշելի կը թուէին։ Իրանի զօրանալը միշտ Հռովմայ ապահովութեան վտանգ մը կը համարուէր. միւս կողմանէ Պարսիկներն ալ Հռովմայեցիները իբր իրենց բուն թշնամին կը նկատէին, որուն դէմ կռուիլ ու տկարացընել՝ ինքնապահպանութիւնը կարծես պարտք կը դնէր վրանին։

Այսպէսով քաղաքական յարաբերութեանց պատմութիւնը երկու տէրութեանց միջեւ, ըստ մեծի մասին ուրիշ բան չի դներ մեր առջեւ, բայց եթէ անընդհատ մարտի ու պատերազմի շղթայ մը, որ մերթ ընդ մերթ կարճատեւ կամ երկարաձիգ զինադադարով եւ կամ ըստ երեւութին պահպանուած խաղաղութեան դաշինքներով, կ՚ընդմիջէր։ Չորրորդ դարէն սկսեալ՝ այս պատերազմներուն մէջ յարձակումներուն սկիզբը Պարսկաստանէն էր, մինչդեռ Հռովմայեցիք — եթէ Յուլիանոսի բախտախընդրական արշաւանքը չհաշուենք — դիմադրութեան ու պաշտպանութեան սահմաններէն չէին ելլեր։ Ադրիանոսէն սկսեալ՝ կայսերաց արեւելեան քաղաքագիտութիւնը կը ջանար ստորին

Եփրատի եւ վերին Տիգրիսի ընթացքը իբր սահման հաստատել ընդդէմ Արեւելից։ Այս սահմանէն անդին ընդարձակումներ կամ Պարսկաստանի վնասով աշխարհակալութիւններ ընել, դուրս էր իրենց ծրագրէն[1]. պետութեան իւր երկու մասանցը բաժնուելէն ի վեր՝ այս քաղաքագիտութեան պահպանումը յինքեան հետեւեցաւ Արեւելեան Հռովմէական պետութեան համար։ Սակայն Պարսից մղած պատերազմներն ալ ոչ թէ Պարսկաստանի յաւելումներ ընելու կամ Հռովմէական գաւառները նոյն իսկ առժամանակեայ կերպով գրաւելու համար, այլ աւելի ասպատակելու, կապուտ կողոպուտ ընելու դիտաւորութեամբ էին. կրնանք ըսել թէ աւազակական արշաւանքներ էին, միայն թէ մեծագոյն չափով կատարուած։ Ինչու որ, ըստ առթին բերման, երբեմն Դարեհի պետութեան պատկանող Առաջակողմեան Ասիայի երկիրներուն յետս գրաւումը իբր պատերազմին վախճան յառաջ բերուած ատեն, այսպիսի պահանջներու մէջ արեւելեան սնապարծութիւնն ալ բաւականաչափ մաս մը կ'ունենար։

Իրօք կամ կարծեցեալ ստգտանաց առիթներ չէին պակսեր։ Մերթ քրիստոնեայ փախստականներ, որոնց Պարսկաստանի յանձնումը կը զլացուէր, մերթ երկու պետութիւններէն մէկուն հետ դաշնաւորած արաբ ցեղերուն ձեռնձգու-

---

1 Դիոկղետիանեան խաղաղութեան ատեն անդրտիգրիսեան սատրապութեանց գրաւումը բացառութիւն մըն է. Հմմտ. Գիւտերբոք, Հռովմէական Հայաստան։

թիւնները, երբեմն ալ հռովմէական դրամական նպաստից (subsidia) վճարման զլացումը եւ այլն։ Բայց ամէնէն աւելի դրացի փոքր տէրութիւնները խաղաղութեան բարձուելուն զօրեղ պատճառներ կը մատակարարէին. վասն զի ոչ Հռովմայեցիք, ոչ ալ Պարսիկները փոփոխակի նախանձախնդրութեան պատճառաւ կրնային տանիլ, որ մէկալը այն փոքր տէրութեանց վրայ բացարձակ կամ առաւելագոյն ազդեցութիւնը բանեցընէ։ Հայաստան՝ Պարթեւաց ժամանակէն իսկ երկու պետութեանց մէջ միջակային կռուախնձորն եղած էր, մինչեւ որ Թէոդոս Ա. կայսեր դրած բաժանման դաշինքով այս երկրին մէջ գոնէ պռ ժամանակ մը հանգիստ տիրեց[1]։ Սակայն աւելի հիւսիս ինկող հեռաւոր երկիրները Լազիկա, Իբերիա, Աղուանիա, կռուի առարկաներ մնացին, զորոնք երկու պետութեանց իւրաքանչիւրը իւր իշխանութեան սահմանին մէջ խոթելու կ'աշխատէր։

---

## ԿԱՅՍՐ ԵՒ ԱՐՔԱՅԻՑ ԱՐՔԱՅ ՓՈՓՈԽ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ՄԷՋ

Հռովմ իւր եզական տիեզերական իշխանութեան պատճառաւ, մերժած էր տկարագոյն պարթեւ պետութիւնը ճանչնալ իրեն հաւասար մեծ պետութիւն. բայց զօրեղագոյն Սասանեան պետութեան առջեւ, թէպէտ ակամայ, ստիպուե-

---

[1] Գիւտերբոք, անդ։

ցաւ, տեղի տալ եւ զայն իբր այնպիսի ճանչնալ[1]։ Մինչեւ իր կործանումը՝ Պարսից պետութիւնը Հռովմայ առջեւ իբր հաւասարազօր կը համարուէր, ինչպէս Պարսից արքաներն ալ Հռովմայեցւոց պետութեան հաւասարազօրութիւնը տարակուսի տակ չէին ձգեր։ Խաղաղութիւնը հաստատելու համար Գաղիերոսի՝ Դիոկղետիանոսի կեսարին ղրկուած պարսիկ դեսպանը Հռովմ ու Պարսկաստան երկու ջահի կը նմանցընէր[2]. Նման էր Խոսրով Բ. Թագաւորին առ Մաւրիկ գրածը, թէ նախախնամութեան տնօրէնութեան համաձայն՝ երկու պետութիւնները հաստատուած են իբր աչուըներ, ամբողջ աշխարհք լուսաւորելու համար[3]։ Պարսից համար ստոյգ է կար երրորդ իշխանութիւն մ՚ալ, այսինքն է Չինաստանը[4], որ Իրանի եւ Հռովմայ հետ աշխարհքիս մէջ իր բաժինն ունէր, բայց վերջնոյս համար նշանակութիւն չունէր։

Բիւզանդական եւ պարսիկ պետութեանց ազգաց իրաւանց վերաբերեալ յարաբերութիւնները նկատողութեան առած ժամանակնիս,

---

1 Մոմսէն, Պատմութիւն Հռովմայեցւոց, 5. 393։

2 Պետրոս Պատրիկիոս Հատուած. 13 (Միւլէր, ՀՅՊ. 4. 188) — "զի են որպէս զերկուս ջահս հռովմէական եւ պարսիկ թագաւորութիւնքդ"։

3 Թէոփիղակտոս Սիմոկատտէս (հրատ. դը Բոորի) 4. 11. "անդուստ ի վերուստ եւ ի սկզբանէ արկ աստուածութիւնն ի կիր, իբրեւ զերկուս լուսաւորս ի լուսաւորել զաշխարհ, այսինքն է զհզօրագոյն թագաւորութիւնն Հռոմոց եւ զզգօնագոյն ցուպն Պարսից ինքնակալութեանդ"։

4 Այսպէս Ֆիրդուսիի քով. Շահնամէ՝ զանազան տեղեր։

աչաց առջեւ կը հանդիսանան բաւականաչափ նմանութիւններ այժմու տէրութեանց յարաբերութեանց հետ. կարծես սխալած չենք ըլլար, եթէ շատ մը նորագոյն երեւոյթներու աղբիւրն ու նախատիպ օրինակը նոյն ատենուան դիւանագիտական յարաբերութեան եւ ժամանակին կիրարկուած ձեւակերպութեանց մէջ փնտռելու ըլլենք։

Առանց ի նկատի առնելու այն մեծ տարբերութիւնը, որ ազգայնութեան, կրօնի եւ պատմական զարգացման տեսակէտէ երկու ազգերը կը բաժնէր, արքունական կեանքը եւ կայսեր պալատան մէջ տիրող արարողական կարգը շատ իսկատիպ նմանութիւններ ստացաւ Տիզբոնի արքունիքէն, երբ Դիոկղետիանոս եւ անոր յաջորդները արեւելեան մեծաշուք պերճութիւնը եւ Ասիայի յատուկ ստրկամիտ հպատակութիւնը Բիւզանդիոնի մէջ տնկեցին։ Թէ հոս եւ թէ հոն բացարձակ միապետը պարփակուած էր նոյն վեհափառութենէն եւ աստուածանմանութենէն։ Արքայից արքային տարազին[1] հետ արտաքոյ կարգի նմանութիւն մ'ունէր կայսեր պատկերը, իր հարուստ, ոսկւով ու պատուական քարերով պճնուած զգեստներով, իւր խոյրով եւ ծիրանի մուճակներով։ Երկուքին ալ նոյն երկրպագութիւնը եւ ծնրադրու-

---

1 Պարսից թագաւորներուն տարազին վրայ տ. Rawlinson, The seventh oriental Monarchy, 643. Շպիգել. Eran. Altertumskunde 3. 610, Նէօլդեկէ, Տաբարի, 453։

թիւնը կ՚ըլլար. կարելի չէ ուրանալ թէ կար նմանութիւն նոյն իսկ անձնապահաց, ներքինեաց ու պալատական պաշտօնէից մէջ, որ ինքնակալաց անձնական ծառայութեան որոշուած էին։ Ինչպէս Հռովմ նոյնպէս Տիզբոնի մէջ շողոքորթ հացկատակներ եւ նենգամիտ բանսարկուներ, կը թունաւորէին մթնոլորտը. լոկ արքային արքային յատուկ կանանոցը կը պակսէր կայսեր արքունի կայանին մէջ։

Պարսիկ բարձրագոյն դասը ազգային յատուկ պակասութեանց հետ, ինչպէս ունայնամտութիւն, ամբարտաւանութիւն եւ կեղծիքի ու խաբէութեան միտութիւն, ունէր նաեւ բնածին ասպետականութիւն, վայելուչ ազնուութիւն եւ կերպական քաղաքավարութիւն, ինքնին իսկ թշնամեաց հանդէպ։ Այս յատկութիւնները երեւան կու գային նաեւ երկու պետութեանց եւ ինքնակալաց մէջ եղած դիւանագիտական յարաբերութեանց ժամանակ։ Սովորութեամբ եւ աւանդական տուչութեամբ այս յարաբերութեանց մէջ յընթացս ինչ ինչ հաստատուն սկզբունքներ կազմուելով՝ մինչեւ իսկ ազգաց իրաւունք կազմող օրինական հիմունք դարձան, որոնց խիստ պահպանութեանը երկու կողմերն ալ կը հսկէին եւ ոտքի տակ առնուելուն խոժոռ աչքով կը նայէին։

Տիեզերական կարգին կողմանէ կայսր եւ արքային արքայ իրարու հաւասար են։ Ինչպէս որ Իրանի արքան “Տէր արեգական արեւելից„ (ἡλίου ἀνατολῆς) է, նոյնպէս ալ կայսրը “Տէր

լուսնոյ արեւմտից[1]» (σελήνης δύσεως)։ Այս իսկ պատճառաւ ճիշդ մեր ժամանակի վեհապետներուն պէս երկուքն ալ զիրար իբր եղբայր կը նկատեն. իրենց նամակներուն մէջ զիրար եղբայր կը կոչեն, ինչպէս նաեւ պատգամաւորութեանց ժամանակ բերան առ բերան եղած բանակցութեանց միջոցին՝ այս բացատրութիւնը կը գործածեն[2]։ Նմանապէս Թէոդորա, Յուստինիանու ամուսինը, Պարսից դշխոյն իրեն քոյրը կ'անուանէ[3]։ Այս եղբայրական յարաբերութիւններով հանդերձ՝ Պարսից թագաւորը իրեն անձին առաւելագոյն դիրք մը կը պահանջէր։ Կը պարծի իբր աստուածային ցեղէ ծնած եւ աստուածեղէն պատիւներ իւր անձին կը վերագրէ[4], միայն եւ միայն իրեն սեպհականել կ'ուզէ, նոյն իսկ Հռովմայ կայսերաց առջեւ՝ Շահին-շահ հին պարսկական տիտղոսը։ Հռովմայ կայսրը Պարսից առջեւ էր լոկ "կայսար ի Ռում[5]" եւ իրենց արքայից արքային բարձր աստիճանէն վար կը թուէր։ Այսպիսի անապարծ պահանջո-

---

1 Մաղաղաս (Հրատ. Բոնի) 449։

2 Եւսեբ. Վարք Կոստ. 4. 9. Ամմիանոս 17. 5. 7. Մաղաղաս 415. 449. Մենանդր Հատուկտ. 11. եւ այլն։

3 Մաղաղաս 487. "դշխոյին Պարսից քեռ իւրում"։

4 Նախշ-ի-Ռուստամի երկլեզու արձանագրութեան յունարէնը Սասանեանց հիմնադրին համար այսպէս կը խօսի. "Այս է անձն Մազդեզն Արտաշրի աստուածոյն, արքայից արքային Արեաց, ի զարմէ աստուածոց"։ Հմմտ. Rawlinson the seventh Monarchy 71. Մոմսէն Հռովմ. Պատմ. 5. 415։

5 Պրոկոպ. Պարսկ. Պատմ. (Հրատ. Բոնի) Ա. 21 (էջ 244). "կայսար, այսպէս կոչէին Պարսիկք զարքայն Հոռոմոց"։

ղութիւններ ի Հարկէ Հռովմայեցւոց կողմանէ բանի տեղ չէին դրուեր. Իրանի թագաւորը պաշտօնապէս երբեք βασιλεύς βασιλέων չէր յորջորջուեր. կայսեր պէս անոր լոկ βασιλεύς պարզ տիտղոսը կը տրուէր։

Երկու արքունեաց դիւանագիտական յարաբերութիւնը տեղի կ'ունենար դեսպանաց միջոցաւ եւ առանց ձեռքով եղած թղթակցութիւններով։ Երկու ինքնակալները երբեք անընդմիջաբար տեսակցութիւն չեն ունեցած։ Նոյն ատենները պաշտօնական վեհապետական այցելութիւններու կամ հանդիպումներու սովորութիւն չկար, ոչ Բիւզանդիոնը արքայից արքայ մը, ոչ ալ Տիզբոն ոեւէ կայսր մը իր պարիսպներէն ներս հիւրընկալած է։ Ֆիրդուսիի այն լուրը անշուշտ ինքնագիւտ կցկցանք մըն է, իբր թէ Շապուհ Բ. կայսերական մայրաքաղաքն ծածուկ այցելած ըլլայ։

Այսպէսով անձնական հաղորդակցութեանց ճամբան միայն գրաւոր թղթակցութիւնը մնաց։ Աղբիւրները՝ կայսերաց եւ արքայից արքաներու շատ մը թղթեր, մասամբ բնագիր, մասամբ ալ պարսիկ գրութիւնը յունարէն բառացի եւ հաւատարիմ թարգմանութեամբ, աւանդած են, որոնց վաւերական ըլլալուն վրայ տարակուսի երթալու հիմ չունինք[1]։ Բնականա-

---

1 Կոստանդնի առ Շապուհ թուղթք. առ Եւսեբ. Վարք Կոստ. 4. 9։ Շապհոյ առ Կոստանդիոս եւ ասոր պատասխանները. առ Ամմիանու 17. 5, 7։ Կաւատի առ Յուստինոս, առ Մաղաղասայ 415. 449։ Յուստինիանու առ Խոս-

պէս այսպիսի հզօր վեհապետաց թղթակցութիւնը արքունական կարգի կանոնի որոշ ձեւերու մէջ շարժած ըլլալու է, եւ յիշեալ թղթերէն, ինչպէս նաեւ Ֆիրդուսիի Շահնամէէն — որ Սասանեանց դարուն մեծարժէք պատմական աղբիւր կրնայ համարուիլ[1], եթէ նկատի չառնունք բանաստեղծական յարդարանքն ու զարդարանքը — կը ստուերագծի պատկեր մը, թէ ինչպիսի՛ եղանակաւ կը յօրինուէին արքայից արքային թղթակցութիւնները։

Արքայից արքային նամակները իւր իսկ հրամանաւ իր քարտուղարներէն մէկը յատուկ թանաքով կամ գունով եւ արքունի դիւանին մէջ սովորաբար գործածուած պեհլեւի նշանագրերով՝ որոշ նիւթի մը (մետաքս, մեծագին մագաղաթ) վրայ, որ թագաւորական գործածութեան համար մասնաւորապէս որոշուած էր, կ'արձանագրէր։ Յետոյ թղթին դրսի կողմը կ'աւելցուէր առաքողին եւ հասցէակրին յորջորջանքը բովանդակող մակագիրը, մետաքսեայ երիզով կը ժապաւինուէր ու վերջապէս թագաւորական կնքով կը կնքուէր[2]։

Արեւելեան դիւանական բարձրաթռիչ ոճին հաճելի էր եւ Պարսից ունայնապարծու-

---

րով Ա. առ Պրոկոպ. ԴԴ. Բ. 4. (169)։ Խոսրովու առ Յուստինիան, առ Մենանդրի Հատկ. 11։ Խոսրովու Բ. առ Մաւրիկիոս, առ Թէոփիղ. 4. 11 (169). եւ այլն։

1 Նէօլդեկէ, Ցաբարի, Ներած. Ֆիրդուսի հոս ըստ Յ. Մոլի թարգմանութեան, le livre des rois, յառաջ կը բերուի։

2 Ֆիրդուսի բազմաթիւ տեղեր, գ. օր. 6, 119. 155. 409։

թիւնը կը շողքորթէր, թագաւորին անուան եւ տիտղոսին կցել բազմութիւն մը փառաբանող ու մեծադղորդ ածականներ, որ նպատակ ունէին ընդունողին վրայ ազդեցութիւն բանեցընելու եւ թագաւորին մեծ իշխանութիւնը մասնաւորապէս աչքին առջեւ երեւցընելու։ Այսպէս Շապուհ Բ. Կոստանդիոսի գրած թղթի մը մէջ (356) ինքզինքը կ'անուանէ. "ընկեր աստեղաց, եղբայր արեգական եւ լուսնոյ[1]"։ Աւելի խիստ բաղադրուած են գոյները Խոսրովին 562 առ Յուստինիանոս գրած նամակի մը մէջ, ուր անիկա իբր "աստուածեղէն, բարի, խաղաղասէր, ողորմած Խոսրով, թագաւոր թագաւորաց, երջանիկ, բարեպաշտօն, իրաւարար, որուն դիք մեծ բախտ եւ ընդարձակ պետութիւն մը տուած են, հզօր ի մէջ հզօրաց եւ ըստ էութեան դից կազմուած" կը փառաբանուի[2]։ Բայց ան եւս պէտք չէ մոռնալ, որ կայսերք ալ իրենց յաղթութեանց ու

---

[1] Ամմիանոս 17. 5. „Rex regum Sapor, particeps siderum, frater Solis et Lunae“.

[2] Մենանդր Հռետ. 11. (ՀՅԳ. 4. 209). "աստուածեղէն, առաքինի, խաղաղական, արքայ Խոսրով, արքայ արքայից, երանելի, բարեպաշտօն, բարերար. որում դիք շնորհեալ են բախտ մեծ եւ թագաւորութիւն մեծ, սկայ սկայից եւ ի բնութենէ աստուածոց"։

Բոլորովին տարբեր լեզու կը բանեցընէ իւր թոռը Խոսրով Բ., երբ Մաւրիկիոսէն օգնութիւն կը խնդրէ։ Ինք զինքը կը կոչէ լոկ. "Խոսրով արքայ Պարսից", իսկ կայսեր անձը բազմաթիւ յորջորջանքներով կը զեղու. "իմաստնագոյն արքային Հոռոմոց, բարեգործ, խաղաղարար, հզօր, որ սիրէն զբարետոհմն եւ ատէ զբռնաւորն, իրաւընտիր", եւն Թէոփիլ., 4. 11 (169)։ Թղթիս վաւերականութիւնը անտարակուսելի է։

ձաղանաց տիտղոսներուն հետ՝ սիրով կը գործածէին ինչ ինչ յայտանիշ դարձած պատուանուններ, որոնք ի հարկէ պարսկական ճոռոմաբանութիւններէն շատ հեռ կը մնային[1]։

Իրենց թղթերուն մէջ առաքող իշխանները իրենց անձին համար յոքնակի առաջին դէմքը կը գործածէին, իսկ ստացչին հետ մերթ եղբայրական "Դուն" եւ մերթ ալ — որ աւելի քաղաքավարական կ'երեւար — առարկայական բանաձեւ մը կը գործածէին, ինչպէս ‚ἀδελφότης' կամ ‚ἡμερότης' (վերջինս մեր վեհափառութեան համապատասխանող յորջորջանք մըն է)։

Վաղնջական սովորութեան վրայ հաստատուած պարտաւորութիւն մըն էր, որ ինքնակալներէն միոյն փոխուելովը՝ նորին գահակալութիւնը մէկալ կողման պաշտօնապէս ծանուցուէր, այս ծանուցման կը պատասխանուէր սովորաբար շնորհաւորական պատգամաւորութեամբ[2]։ Այս պատճառաւ ընդդէմ սովորութեան գործուած

---

[1] Յուստինիան միշտ հետեւեալ բանաձեւերը կը գործածէ „pius (εὐσεβής), felix (εὐτυχής), inclutus (ἔνδοξος), victor (νικητής), triumphator (τροπαιοῦχος), semper augustus (ἀεισέβαστος, αὔγουστος)". Այս բանաձեւը պահեցին նաեւ իր յաջորդները, մինչեւ տասներորդ դար։ Որ-ոչ. կը հանդիպինք ասոր՝ Մակեդոնական հարստութենէն Լեւոն Իմաստասէր կայսեր օրինագրոց մէջ։

[2] Յուստինիանոս կը ծանուցանէ "հանդերձ ծանուցմանն պարգեւօք", Մաղաղաս 448. Նմանապէս Յուստինոս Բ. "Զթագաւորելն իւր ծանոյց, որպէս սովորութիւն էր Պարսից եւ Հռովմայեցւոց", Մենանդր Հռետ. 15. Նմանապէս Տիբերիոս, Թէոփիլ. 3, 12 (134), Թէոփանէս ժամանակագ. (Հրատ. Բոնն) 250։

խիստ յանցանք եւ յարգութեան բռնաբարութիւն համարուեցաւ, երբ Խոսրովի որդին Որմիզդ, իր գահակալութիւնը դիտմամբ չծանոյց Տիբերի (579), Թէպէտ ասիկա քիչ մը յառաջ իր Թագաւորելը — չնայելով Արեւելեան Հռովմէական պետութեան եւ Պարսկաստանի մէջ տիրող պատերազմական ձայներուն — անոր նախորդին իմացուցած էր[1]։

Իսկ Խոսրով Բ. Փոկասէն ղրկուած Թուղթն ու Թղթաբերը անոր համար չընդունեցաւ (602), վասն զի զՓոկաս իբր իր հայրական պաշտպանին, Մաւրիկիոսի սպանիչը եւ ապօրէն եղանակաւ գահուն յափշտակողը, չէր ուզեր ճանչնալ[2]։ Բայց երբ Փոկաս ինկաւ եւ Հերակղ երկարաձիգ ու փոփոխ բախտով մղուած արիւնահեղ պատերազմներէ վերջը Պարսից արքան խոնարհեցուց, որ եւ իր պարտութեանց համար սպանուեցաւ (628), իր յաջորդին Կաւատ Շերոյէի առաջին գործքն եղաւ, իր Թագաւորելը ծանուցանել եւ խաղաղութիւն խնդրել[3]։

Միջազգային յարաբերութեանց ժամանակ ալ կայսր եւ արքայ փոխադարձաբար զիրար չէին մոռնար։ Երբ պարսկական դեսպաններ Բիւզանդիոն ոտք կոխէին, կայսրը հանդիսական

---

1 Թէոփիղ. 3, 17 (145)։

2 Թէոփիղ. 8, 15 (313).

3 Այս եղաւ Զատկական ժամանակագրութեան մէջ (Հրատ. Բոն) 735 յառաջ բերուած նամակին մէջ, որուն վերնագիրը այս է. "Ի Կաւատայ Շահին-շահէ՝ Հերակլեայ, չքեղալուք արքային Հռոմոց, եղբօր մերում"։

ունկնդրութեան միջոցին իւր ժամաւոր եղբօր որպիսութիւնը կը հարցնէր[1]։ Մասնաւոր առիթներու առեն ողջոյններ եւ շնորհաւորութիւններ կը փոխանակուէին։ Այսպէս Խոսրով շնորհաւորեց Յուստինիանոսը Վանդալաց յաղթելուն համար, միանգամայն երկմիտ կատակաւ աւարամաս պահանջեց, յայտնելով թէ աւարը չէր կրնար ընել, եթէ ինքը խաղաղ չկենար, եւ Յուստինիան ակնարկութիւնը հասկընալու չափ խոհեմ ըլլալով՝ հարուստ պարգեւներով նոյնին պատասխանեց[2]։ Առ հասարակ պարգեւատուութիւնը սիրելի դարձած միջոց մ'եղած էր ընդունողին բարեացակամութիւնը կամ ձեռնպահ մնալն ապահովելու, սպառնացող չմիաբանութիւններ հաշտեցընելու եւ դիւանագիտական գործողութիւններ յառաջացընելու։ Պատգամաւորութիւնները, որ զանազան վախճանաւ կայսերական կամ պարսկական արքունիք կ'առաքուէին գրեթէ միշտ ընծայ մը կը տանէին ինքնակալին, որուն հետ բանակցութիւնը պիտի ըլլար, երբեմն ալ անոր ամուսնոյն[3]։ Յուստինիանու հօյակապ դիւանագէտը եւ պաշտամանց մագիստրոս Պետրոս, որուն սռէպ պիտի հանդիպինք, հատուածի մը մէջ, զոր Կոստանդին

---

1 Կոստանդին Պորփիւրոգ., վասն Կարգաց (Հրատ. Բոն) I. 89 (406)։ «Զիարդ է առողջութիւն եղբօր մերոյ Աստուածով, ուրախ եմք ընդ ողջութիւն նորա»։

2 Պրոկոպ. ՊՊ. Ա. 24 (137)։

3 Պարգեւներու յիշատակութիւն կ'ըլլայ շատ անգամ Պրոկոպիոսի, Մաղաղասի, Թէոփանէսի եւ այլոց քով։ Պարգեւ առ դշխոյն Պարսից առ Մաղաղասայ, 467։

կայսրը բիւզանդական արքունի արարողական կարգերու վրայօք իւր մեծ գործքին մէջ տուած է[1], մանրամասն կը ստորագրէ, թէ ինչպէս ընծաները հանդիսական ունկնդրութեան առեն պարսիկ դեսպանին ձեռքով կայսեր կը յանձնուէին։ Թագաւորական պարգեւները — կը յիշատակուին զգեստեղէնք, պատուական քարեր, զարդեր, ինչպէս նաեւ ձիեր — նախ պաշտօնական ցուցակի մէջ կ'առնուէին, յետոյ դեսպանին ուղեկիցները կայսեր կը տանէին ու կը մատուցանէին եւ նոյն հետայն արքունի գանձատան մէջ ճշդիւ կը գնահատուէին, որպէս զի անոնց արժէքէն կշռելով՝ իրենք ալ Պարսից թագաւորին ղրկեն համարժէք ընծաներ։ Դեսպաններն ալ մեծապարգեւ կը մեծարուէին, եթէ ինքնակալին շնորհքը վաստկած ըլլային[2]։

Բայց լոկ պարգեւով չէր որ իրարու հաճոյակատար կ'ուզէին երեւալ։ Որչափ ալ կայսր եւ արքայ ստէպ ստէպ իբրեւ թշնամի եղբայրներ պատերազմի դաշտին վրայ դիմացէ դիմաց կը բանակէին, սակայն եւ այնպէս խաղաղութեան ժամանակները ըստ կարելւոյն իրարու բաղձանքներն ու խնդրուածքները կը կատարէին։ Յուստինիանոս Խոսրովին բաղձանքին համաձայն՝ հրաման տուաւ երկրէն վտարուած նոր պղատոնական փիլիսոփայից, որոնք Պարսկաստան ապաստանած էին, անարգել հայրենիք դառնալ[3],

---

Կոստանդին. վասն Կարգաց 89, 90 (398 յէ.)։

2 Պրոկոպ. Գոթ. Պ. Դ. 15 (539)։

3 Ագաթիաս (Հրատ. Բոն), Բ. 31 (232)։ Այս բանս հանդիպեցաւ 532ի խաղաղութեան առթիւ։

տարի մը վերջին ալ Թագաւորին աղաչանքին վրայ թոյլ տուաւ, որ իրմէ մեծապէս յարգուած Տրիբունոս բժիշկը զայն խնամելու համար Պարսկաստան երթայ։ Երբ ասիկա ետ դառնալու առեն վարձատրութիւն խնդրելու տեղ շատ մը ազնուական Հռովմայեցի գերիներու ազատութիւնը ուզեց, Խոսրով անոր այս խնդիրքը ոչ միայն չմերժեց, այլ նաեւ քանի մը հազար գերի առանց փրկանքի արձակեց[1]։

Ուրիշ նկարագիր ունէին այն դրամավճարները, որ Հռովմայեցիք Պարսից ընելու ստիպուած էին։ Այս վճարումները ո՛չ ուղղակի պարգեւ ո՛չ ալ շարունակեալ տուրքի ձեւով օգնութիւն էին, ինչպէս որ հռովմէական պետութեան զօրութեան ու ճոխութեան հետզհետէ իյնալովը՝ կայսերական կառավարութենէն անընդհատ գործադրուած սովորութեան մը համաձայն, բարբարոս ազգերու (Հոնաց, Աւարաց եւն), կ'ըլլուէր, որպէս զի անոնց յարձակումէն զերծ մնայ պետութիւնը։ Այս ստակը՝ Պարսից ըսածին համաձայն, կը տրուէր իբր դաշինքով հաստատուած նպաստ մը՝ Կասպեան կապանքը[2] պահպանելու, միւս կողմանէ կարելի չէր Պարսից հետ խաղաղութիւն կամ նոյն իսկ զինադադար ընել, որ ահագին գումարով գնուած չըլլար. եւ որովհետեւ այսպիսի վճարումներ յաճախ տարիներու վրայ պայմանաւորուած կ'ըլլային, Պարսից աչքին առջեւ պարզապէս

1 Պրոկոպ. ՊՊ. Բ. 28 (281), ԳՊ. Դ. 10 (504)։
2 Պրիսկոս Հատկտ. 31 (ՀԵՊ. 4. 105)։

Հռովմայեցւոց կողմանէ Պարսկաստանի տրուած տուրքը կ'երեւային, որչափ ալ Հռովմայեցւոց ամբարտաւանութիւնը այս ընդունման դէմ զայրանար: Իրաց այս վիճակը Տիզբոնի արքունիքը յօգուտ գործածելով՝ դրամական տագնապի ատեն կայսեր կը դիմէր օգնութիւն ընդունելու, որ երբ զլացուէր, ինչպէս որ Կաւատ Թագաւորին Անաստաս կայսրը զլացաւ, դէշ կու գար եւ իբր պատերազմի պատճառանք կը ծառայէր[1]: Մինչդեռ երբ Խոսրով Բ. 591ին մասամբ նեղութեան ատեն, Վահրամ Չոբին բռնաւորը գահէն վտարելու համար, Մաւրիկիոս կայսեր դիմեց եւ կերպապէս պարտամուրհակ մատուցանելով ստացաւ խնդրած դրամը, այս գումարը իբրեւ իրական փոխառութիւն համարուեցաւ[2]:

*Հաղորդակցութիւն Պատգամաւորութեամբ:*

Ո՛չ կայսերական եւ ո՛չ ալ պարսկական արքունիքը մշտակայ դեսպանութիւն կը պահէր, դիւանական յարաբերութիւնը երկու ինքնակալաց մէջ կ'ըլլար լոկ մասնաւոր պատգամաւորներու միջոցաւ, որ երբեմն երբեմն կը ղրկուէին որոշեալ գործողութիւններ կամ պատուէրներ գլուխ հանելու: Երկու տեսակ պատգամաւորութիւն կը զանազանէին թէ Հռովմայեցիք, թէ Պարսիկք. մեծ եւ փոքր, զանազանութիւն մը,

1 Պրոկ. ՊՊ. Ա. 7 (33), Թէոփանէս 144, Մալալա 449:

2 Թէոփիլակտոս 5. 2 (191). «Խոսրով արկեալ ձեռնագիր ի մուրհակ պարտուցն առաքեաց առ Մաւրիկիոս,

որ կարծես այժմու դեսպանի եւ պատգամաւորի տարբերութեան կը մօտենայ, բայց յիրականին տար հետ գործք չունի, ինչու որ նաեւ փոքր դեսպան կոչուածներն ալ միշտ իբրեւ իրենց վեհապետին ներկայացուցիչներ կը համարուէին[1]։ Որչափ որ աղբիւրներու ցանցառ տեղեկատուութիւնէն կարելի է եզրակացընել, մեծ պատգամաւորութիւն ըսելով այնպիսիներ կը հասկըցուէին, որոնց գլուխը գրուած անձը կամ անձերը շատ նշանաւոր դիրք կամ աստիճան ունեցողներ — մեծ պատգամաւորներ — կ՚ըլլային, որոնք արտաքոյ կարգի ծանրակշիռ բանագնացութեանց համար դեսպանագնացութեան կը խաւրուէին եւ մասնաւոր իմն հանդիսութեամբ կ՚ընդունուէին։ Նուազ ծանրակշիռ խնդիրներու, զ. օր. լոկ թուղթ մը տանելու համար, պզտիկ հրեշտակութիւններ կ՚առաքուէին, որոնց ներկայացուցիչները այնչափ նշանաւոր չէին ըլլար։ Դեսպանաց ընդունելութիւնը՝ ընդունող իշխանակալին համար յաճախ շատ ծախքերու կը նստէր, ուստի սովորութիւն էր, զանոնք հայրենիք արձակելէն վերջը, փոքր դեսպանութիւն մ՚ալ խաւրել, որպէս զի առաջին դեսպանաց ընդունելութեան համար ընդունող իշխանակալին շնորհակալութիւն յայտնեն[2]։

---

1 Մենանդր Հատկտ. 38. 41. 54 (246. 242. 255). «զմեծ դեսպանս, զմեծագոյն դեսպանս» Հատկտ. 46 (248). «զփոքր պատգամաւորութիւնն». — Կոստ. վասն Կարգաց Ա. 89 (398). «Մեծի դեսպանին Պարսից եկելոյ».

2 Մենանդր Հատկտ. 41 (242). «ի վաղուց այնպիսի իմն սովորութիւն կալաւ զի զհետ մեծաց դեսպանաց

Ղրկուելի ամէն հրեշտակութիւն յառաջունէ այն ինքնակալին կերպապէս ծանուցանելու էր, որուն քով պատգամաւորութիւնը պիտի հաւատարմացուէր. այս ծանուցումը թըղթով կ'ըլլար տէրութեան սուրհանդակաց ձեռօք. սակայն կը բաւէր նոյն իսկ սահմանագծերուն վարիչները տեղեկացընել, որոնց գործքն էր այնուհետեւ լուրը յառաջ տանիլ եւ հաղորդել[1]: Ինքնակալներէն եւ ոչ մին պատգամաւորութիւն մ'ընդունելու պարտաւորուած էր. նոյն իսկ խաղաղութեան ատեն իւր կամքէն կախուած էր ընդունիլն ալ մերժելն ալ եւ իւր երկիրը մտնելն արգելուլ[2]: Եթէ հրեշտակութիւն մը իրեն յանձնուած գործքը բաղձացուածին պէս գլուխ չկարենար հանել, որով ստիպուէր առանց բան մ'ընելու ետ դառնալ, այն ատեն այն ինքնակալը, որ դեսպանութիւնն ընդունած էր, միւս արքունիքը յատուկ պատգամաւորութիւն մը կը խաւրէր, որպէս զի առկախ մնացած բանակցութիւնները վերստին սկսին ու շարունակուին: Այսպէսով երբեմն երկար ժամանակամիջոց մը պատգամաւորութիւններ կ'երթային կու գային, որ խաղաղութեան պայմաններու կամ զինադադարի վրայ բանակցին. կայսեր յանձնարարութեամբ արքայից արքային հետ, կամ հակառակ, մինչեւ

առաքէին զայլ խոնարհագոյն պատգամաւորս վասն ընդունելութեան եւ մարդասիրութեանն ցուցելոյ առ մեծագոյն դեսպանս շնորհս մատուցանել„:

1 Օրինակներ առ Մենանդրի յիշ. տեղերը:

2 Մենանդր Հատկ. 17 (222): Ընդունելութեան դժուարութեանց վրայ Հատկ. 55 (257):

Կայսերը՝ Պարսկաստանի համար սահմանուած դեսպանները կ'ընտրէին տէրութեան ամենաբարձր պաշտօնեաներու շրջանակէն եւ ամենաբարձրաստիճան զինուորականներէն։ Անաստասէն մինչեւ Մաւրիկ դեսպան անուանուած անձնաւորութեանց ցանկին մէջ կը գտնուին ի մէջ այլոց Քաղաքի Վերակացու մը (Praefectus urbi) բազմաթիւ Զօրականաց Մագիստրոսներ (Magistri militum) եւ Պաշտօնէից Մագիստրոսներ (Magistri officiorum), Պարգեւաց կոմս մը (Comes largitionum) շատ մը Հիւպատականք (Consulares), բայց եւ ոչ մէկ հոգի, որ գէթ պատրիկի պատիւ ունեցած չըլլար[1]։ Տիբերիոս բացառաբար իւր հաւատարիմ անձնական բժիշկը Զաքարիա, այլոց հետ Պարսկաստան խաւրեց, բայց տուաւ միանգամայն նախկին հիւպատոսի պատիւ[2]։ Կարգի եւ աստիճանի այնչափ ծանրակշռութիւն չէր տրուեր, երբ պատերազմի ատեն հրեշտակներ ղրկուէին թշնամւոյն բանակը. այսպիսիք ոչ թէ մեծ՝ այլ փոքր պատգամաւոր կը համարուէին[3]։ Պարսից արքաները իրենց պալատական բարձրագոյն պաշտօնեաներէն կամ ամենէն ազնուական տոհմերէն կ'ընտրէին դեսպանները։ Սովորութիւն չկար հարցընելու, թէ արդեօք պատգամաւորը մէկալ պալատան հաճելի է, սակայն եւ այնպէս օտար

[1] Ասոնց ցանկը կրնայ կազմուիլ Մաղաղասէն, Պրոկոպէն, Մենանդրէն եւ Թէոփանէսէն։

[2] Մենանդր Հատկ. 54 (255)։

[3] Պրոկոպ ՊՊ. Բ. 7 (186). Բ. 24 (259)։

ինքնակալին բաղձանքն ալ ի նկատի կ'առնուէր. այս պատճառաւ ալ աւելի նոյնին գնահատման ու սիրոյն արժանացող անձինք, որ անոր շնորհքը վաստըկած էին, կրկին ու կրկին անգամ պատգամաւոր կը խուրուէին[1]:

Հաստատուն կանոն մը կ'երեւայ թէ չկար, որ դեսպանութեան գլուխը մէկ թէ մէկէ աւելի անձինք կենալու էին. կայսերական պատգամաւորութիւնները սովորաբար բազմաթիւ անձինքներէ կը բաղկանային, ըլլայ իրարու թեւ թիկունք ըլլալու, ըլլայ իրարու հսկելու համար. մէջերնէն մէկը, աստիճանով ամէնէն մեծը, իբրեւ գլուխ եւ առաջնորդ բանին կը գործէր: Ի հարկէ դեսպաններու կ'ընկերանային առաւել կամ նուազ թուով ուղեկիցներ իբրեւ օգնական, թարգման եւ ստորակարգ անձինք[2]:

Հաւատարմացընելու համար կերպական թղթի պէտք չկար, վասն զի դեսպանութեան օրինաւոր ըլլալը հաստատուած կ'ըլլար կանխաւ եղած ծանուցումը. իսկ եթէ պատգամաւորութիւնը հետը բերէր նաեւ իր իշխանին մէկ թուղթը, որ սովորաբար կ'ըլլար, այն ատեն այս թուղթը կը բովանդակէր յանձնարարութիւնը եւ դեսպանութեան պաշտօնը կը նշանակէր: Քանի որ պատգամաւորներուն յայտնապէս բացարձակ

---

1 Այսպէս Հերմոգենէս Յուստինոսի եւ Յուստինիանոս օրով, Յուլիանոս եւ Զաքարիա Ձիբերի ատեն, այսպէս Զիկ Խոսրովի ժամանակ:

2 Տես Պրոկոպիոս ՊՊ. Բ. 28 (256). Խոսրովին դեսպանութիւնը կ'իննէ ու [illegible] թիւ զանազան [illegible]:

իշխանութիւն տրուած չէր՝ դաշինք կնքելու եւն, պարտական էին՝ իրենց ինքնակալին՝ դրուած զաշանց հաստատութիւն տալը վերապահել եւ այդ հաստատութիւնը բերել[1] ։ Յայտնի լիազօրութեանց հետ կը յիշուին նաեւ գաղտնի հրահանգներ[2] ։

Երկու պետութեանց դեսպանները ազգաց իրաւամբ առ հասարակ ճանչցուած արտօնութիւնները կը վայլէին նաեւ պատերազմի ժամանակ։ Իրենց անձը անբռնաբարելի էր եւ չէր ըլլար որեւէ կերպով դպչիլ[3] ։ Օտար երկրին մէջ տէրութեան ծախքով ազատ կ'երթեւեկէին[4] եւ իրենց աստիճանին համեմատ կը տեղաւորուէին ու կը հոգացուէին, իրենց հետ բերած առարկաները մաքսային մուտքի եւ ելքի վճարմանց ենթակայ չէին եւ վաճառականական սովորական սահմանափակութիւններէ ազատ էին[5] ։ Մինչդեռ կայսերական կառավարութիւնը միշտ հոգ ու փոյթ կը տանէր, որ ազգաց իրաւանց այս սկզբունքները ճշգրիտ պահուին, անդին պարսիկ պետութիւնը այս ակնածութիւնը երբեմն ոտքի տակ կ'առնուր։

Օտար պատգամաւորներն ընդունելու մասնաւոր կարգ կանոններ կային բիւզանդական արքունեաց մէջ, որոնց կէտ առ կէտ պահպանութեան մասնաւոր խնամք կը տարուէր պարսկա-

---

1 Մենանդր Հատվ. 11. 54 (209, 255)։
2 Մենանդր Հատվ. 47 (251)։
3 Dig. de legat. 50. 7. 18.
4 Cod. Just. de cursu publico 20. 50. 16.
5 Cod. J. de comm. et mercat 4. 63. 4. § 3.

կան դեսպաններուն հանդէպ, իբր ամենահզօր դրացի պետութեան ներկայացուցիչներու։ Պալատական քաղաքավարութեան եւ սիրալիր վարմանց մէջ այն ատեն մանաւանդ զիրար գերազանցելու կ'աշխատէին, երբ խնդիրը երկու պետութեանց մէջ խաղաղութիւն հաստատելու կամ պահելու վրայ ըլլար։

Վերոյիշեալ Պետրոս մեզի աւանդած է տարրագրութիւն մը պարսիկ պատգամաւորութեան մ'ընդունելութեան, որ միանգամայն նման դիպաց իբր օրինակ որոշուած էր[1]։ Էական մասը հոս յառաջ կը բերենք։

Դիւանական յարաբերութեան հոգատարութիւնը կայսերական արքունեաց մէջ՝ պաշտամանց մագիստրոսին ձեռքն էր, որ ամբողջ արքունականաց իբրեւ գլուխ իր վրայ կը միաւորէր պալատան վերակացուի եւ արտաքին գործոց նախարարի պաշտօնները[2]։

Պատգամաւորութեան ընկալումը ծանուցուելէն վերջը՝ պաշտամանց մագիստրոսին հրամանաւ իւր պաշտօնեաներէն մէկը, որ փառաւորք (Illustres) կոչուածներու աստիճանէն ըլլալու

---

1 Կոստանդ. վասն կարգաց Ա. 89. 90 (398 յլ.)։ Նոյն այն դեսպանութիւնն է, զոր Խոսրով 551 Բիւզանդիոն խուրկեց խաղաղութիւնը կնքելու համար բանակցելու. այս բանս կը հետեւի դեսպանին անուան յիշատակութենէն Ἰέσδεκος, ὁ πρέσβης Χοσρόου, որ անշուշտ Պրոկոպի քով ՊՊ. Բ. 28 (284). եւ ԳՊ. Դ. 15 (537). կոչուած Ἰσδιγούσναςին հետ նոյն պիտի ըլլայ։ Այս անուան պարսկերէնն է Izedh-Gusehnasp (Յազդ-Վշնասպ) տե. վարը։

2 Cod. J. de off. magistr. offic. 1. 31.

էր, պարսկական սահմանը կ'երթար, որ է ըսել հռովմէական Դարաս բերդին եւ պարսիկ Մծբնայ մէջտեղ, որպէս զի հոն իւր զինուորական յուղարկաւոր գնդովը պարսիկ դեսպանը, որուն ընկերացած կ'ըլլային Մծբնէն պարսիկ գունդեր, ողջունէ եւ Դարաս առաջնորդէ, որուն առջեւ այլ եւս պարսիկ յուղարկաւոր գունդը կենալու եւ ետ դառնալու էր։ Հռովմայեցի յանձնակատարին առաջնորդութեամբ ճամբորդութիւնը կը շարունակուէր զինուորական մեծ պողոտային վրայէն, անցնելով Կապադովկիան ու Գաղատիան եւ Նիկիայի վրայէն Բոսպորոսի եզերքը՝ Քաղկեդոն, ուր սովորաբար դեսպանը ճամբորդութեան խոնջութենէն քանի մ'օր հանգիստ կ'առնուր[1]։ Ճամբորդութեան տեւողութիւնը, մէջն առնելով ճամբան պէտք եղած դադարը, 103 օր սահմանուած էր եւ այս ժամանակամիջոցին մէջ էր, որ դեսպանին եւ անոր ուղեկիցներուն պիտոյից համար հարկաւոր դրամը կը տրուէր. բաց աստի իրեն տրուելու էին 5 ձի եւ 30 ջորի[2]։ Քաղկեդոնէն նաւով մայրաքաղաք կը տարուէր, ուր ցամաք ելած առեն կայսերական նժոյգներ ու ձիեր կը սպասէին, զինքը իւր բնակավայրը փոխադրելու, որ ամէն դիւրութեամբ յարդարուած եւ պատրաստուած էր[3]։ Հոս հասնելուն պէս պաշտօ-

---

[1] Կոստանդ. անդ. Հոս յիշուած Ընտիրքը ասորականը չէ կրնար ըլլալ, անտարակոյս Ընտիրք առ. Տաւրոսի ըլլալու է. վասն զի ասոր վրայէն կ'երթար ճամբան։

[2] Ζῶα.

[3] Կոստ. 401, ուր բնակութեանց յարդարանքը աւելի մանր կը նկարագրուի։

մանց մագիստրոսին մէկ փոխանորդին կողմանէ հիւրընկալութեան պարգեւներով կ'ողջունուէր, քաղաքավարութիւն մը, որուն պատասխանել կու տար դեսպանը իրեններէն մէկուն միջոցաւ։ Երկրորդ կամ երրորդ օրը պաշտամանց մագիստրոսին պաշտօնական այցելութիւն մը կ'ընէր, յորում ասիկա տեղեկութիւն կը խնդրէր դեսպանէն անոր ինքնակալ տիրոջ, նոյնին զաւակաց եւ ի՛ւր իսկ որպիսութեան վրայօք եւ կը հարցընէր թէ ճամբորդութիւնը լաւ կատարեց թէ ոչ. կայսրն ալ դեսպանին թղթով կամ բերանացի բարի գալուստ կը մաղթէր, զայն պաշտօնապէս չընդունած[1]։

Հանդիսական ընդունելութիւնը կայսեր կողմանէ՝ կը կատարուէր իբր պետութեան գլխաւոր ծանրակշիռ գործողութիւն մը, յորում Բիւզանդիոն իւր կրցած ամէն փառաւորութիւնն ու պերճութիւնը յերեւան կը հանէր։ Շլացուցիչ շքեղութեամբ, բարբարոսներուն, որպիսիք կը համարուէին նաեւ Պարսիկները, աչքը ըստ կարելւոյն ազդու եղանակաւ խոթել կը նկրտէին պետութեան եւ անոր թագաւորներուն գերազանց զօրութիւնը։ Պաշտամանց մագիստրոսին օգնականը[2] (Subadiuva), ունկնդրութեան նախընթաց իրիկունը դեսպանին կը ծանուցանէր, որ կայսրը երկրորդ օրը զինքն ընդունիլ կ'ուզէ[3]. Նմանապէս կայսրը իւր

1 Կոստ. 403։

2 Ասոր վրայօք տ. Cod. J. 12. 20. 4։

3 Կոստ. 403. "Հրաման ետ արքայ յառաջիկ քեզ, օն յառաջեա"։

վերադոյն սենեկապետին (Decurio) ձեռքով մասնաւոր կերպով զանիկա իրեն կը հրաւիրէր[1]։ Ծերակոյտի անդամները, բարձրագոյն պաշտօնեաները արքունի հրաւէրով ունկնդրութեան կը կանչուէին. Նոյնպէս հոգ կը տարուէր, որ կայսերական Թիկնապահ գունդը, դրօշակիրները, պաշտամանց մագիստրոսին ստորակարգ Թէկնածուները եւ թարգմանները ժամանակին ներկայ գտնուէին։ Ասոնք ալ իրենց հանդիսական հանդերձանքներով, իսկ գունդերը զէնքով ու զարդով կուռ վառեալ հոն ըլլալու էին։

Ընդունելութիւնը կայսերական ապարանաց մեծ գահասրահին մէջ (Magnum consistorium) տեղի կ'ունենար, որ հանդիսական գումարումներու համար որոշուած էր եւ ծանր մետաքսեայ սրահակներով գոցուած երեք դռներով անջատուած կ'ըլլար Նախասրահէն (Ante consistorium)։ Հոս կը մտցուէր պալատան աւչեսի հրապարակէն (Augustaeum) նախագաւթէն անցնելով[2]։

Դեռ բաւական ժամանակ կը սահէր կ'անցնէր, մինչեւ որ դեսպանին թոյլ տրուէր կայսեր երեսը տեսնել։ Պալատ մտնելու առեն պաշտամանց մագիստրոսը զայն կ'ընդունէր եւ մուտ-

---

1 Decurioի վրայ տ. Cod. J. de decur. et silent. 12. 16.

2 Ցեղունդ պարագայից վրայ հմմտ. Պրոկոպ. de aedif I. 9 (199). եւ Կորիպպոսի Panegyricus in laudem Justiniի զանազան տեղերը։

քին քով գտնուող իւր գրասենեակը (Schola) կը տանէր, ուր կայսեր համար բերած պարգեւններուն ցուցակը կ'առնուէր[1]: Այնուհետեւ դեսպանները ներս տանելու որոշուած սենեկապետը[2] (Admissionalis), հետն ունենալով գրասենեկին պաշտօնեաները եւ թարգմաններ, դեսպանը նախասրահ տանելով կը խնդրէ հոն սպասել, մինչդեռ գահասրահին մէջ ամէն ոք կայսեր ընդունելութեան կը պատրաստուի: Ասիկա այս միջոցին թողլով իւր առանձնական սենեակները եւ ունկնդրութեան սրահն առաջնորդուելով՝ գահին վրայ կը բազմի ու կ'ողջունէ ներս մտնող մեծամեծները: Իսկ անկէ վերջը զարմանալի բան մը տեղի կ'ունենայ: Կարծես թէ կայսրը իբրեւ վերին դատաւոր ատեան նստած ըլլայ եւ դեսպանն ալ իբր կողմնակցութիւն առջեւը ելլելու համար եկած՝ ասոր կանխաւ պատրաստուած կերպական հրաւէր մը կը հանուի, զոր պաշտօնեանց մագիստրոսը բարձրաձայն կարդալ եւ հրատարակել կու տայ: "Կանչուի թող Խոսրովի, Պարսից թագաւորին պատգամաւորը եւ անոր հետ եկողները[3]:„ Սենեկապետը (Decurio) նախասրահը կ'երթայ եւ դեսպանին կ'ըսէ, որ վարագոյրը վեր վերցընէ ու ներս մտնէ[4]: Ընդարձակ սրա-

---

1 Տ. վերը:

2 „Introducteur des Ambassadeurs" ըսուածը կը յիշեցնէ:

3 Կոստ. 405. "Կոչեցի Ցազդ-Վշնասպ պատգամաւորն Խոսրովու Պարսից արքայի եւ եկեալքն ընդ նմա„

4 "Գոչէր տասնապետն. 'Λέβα, (— ամբարձ)„:

հին երկայնութեանը պատճառաւ, հազիւ թէ հեռուէն կը նշմարէ իւր մեծութեան ու փառաց նշաններով պճնուած թագաւորին անձն ու կերպարանքը: Մինչ դեսպանին ուղեկիցները ետեւ կը մնան, ինքը կամաց կամաց գահին կը մերձենայ, սովորական յարգութիւնը կ'ընէ կայսեր, երեք անգամ գետին իյնալով եւ ոտքը պագնելով եւ կը մատուցանէ մաղթանքներ կարդալով՝ իւր տիրոջ թուղթը: Կայսրը դեսպանը կ'ողջունէ թարգմանի միջոցաւ եւ իւր թագաւոր եղբօր ողջութիւնը կը հարցընէ. ասոր վրայ դեսպանը հրաման կը խնդրէ թագաւորական պարգեւները յանձնելու եւ կ'ընդունի. այս ընծաները իւր ուղեկիցները նախասրահէն ներս կը բերեն եւ կրկին ու կրկին երկրպագութեամբ կայսեր առջեւ կը դնեն: Թէ այդ ընծաները ինչ կ'ըլլան յետոյ, արդէն ըսած ենք: Ապա կայսրը պատգամաւորը կ'արձակէ սիրալիր խօսքերով, որ կը հեռանայ ինչպէս որ եկած էր, այսինքն երեք անգամ ծնրադիր երկրպագութեամբ. վարագոյրը իւր ետեւէն կ'իջնայ եւ տեսարանը վախճան կ'առնու[1]:

Այս առաջին ընդունելութեան ունկնդրութեան կրնային ուրիշ ոչ այնչափ հանդիսականներ յաջորդել, եթէ կամ կայսրը դեսպանը իրեն հրաւիրած ըլլար խօսակցութեան մը համար, եւ կամ ասիկա պաշտամանց մագիստրոսին ձեռքով կայսրէն ունկնդրութիւն խնդրէր, որպէս զի իւր կողմանէ անոր ընծաներ

1 Կոստանդ. վասն Կարգաց 407. 408.

չկարենան ընել։ Պատուասիրելու պատրուակին ներքեւ պատգամաւորութեան կը հետեւէր պահակախումբ մը, որ նոյնին կ'ընկերանար բնակավայրէն դուրս ամէն կողմ. քաղաքին ամէն փառաւորութիւնները պարծենալով ցոյց կուտային դեսպանին, բայց միայն իրենց ուզած բաները։ Իբրեւ բացառիկ դէպք կը յիշատակէ Պրոկոպիոս, որ Յուստինիանոս թոյլ տուած է Յազդ-Վշնասպին, զոր մեծապէս կը յարգէր, իւր մարդիկներով ազատ համարձակ առանց ուղեկցի Բիւզանդիոնի մէջ շարժիլ[1]։

Պարսիկ դեսպաններուն ընդունելութիւնը միշտ այնպէս սիրալիր չէր ըլլար, ինչպէս Յուստինիանու ատեն, որ երկարամեայ փորձառութեամբ սորված էր, թէ թշնամին լաւագոյն է դիւանագիտական հաճոյակատարութեամբ շահիլ, քան թէ խստութեամբ ուծացընել։ Իւր յաջորդը Յուստինոս, իբր հռովմայեցի կայսր ինքնագիտակցութեամբ առլցեալ, Պարսից դէմ ձայնը բարձրացուց։ Արդէն իսկ Խոսրովի առաջին դեսպանին, Մահբոդի հանդէպ խստութիւն եւ դաժան վարմունք բանեցուց, թէպէտ ասոր ընտրութիւնն ալ իւր ամբարտաւան բնաւորութեանը համար սխալմունք համարուեցաւ։

Պարսից արքունեաց մէջ ալ դեսպաններու ընդունելութեան նկատմամբ ըստ յունական աղբիւրներուն եւ անոնց հետ Ֆիրդուսիի՝ Թագաւորաց մատենին մէջ այս նկատմամբ հաղորդածներուն, բիւզանդականին նման կարգ ու

---

[1] Պրոկոպիոս ՊՊ. Բ. 15 (536—539)։

սարք կը տիրէր։ Ինչպէս պարսիկ դեսպանը Դարասի մէջ, նոյնպէս ալ կայսերականը Մծբնայ մէջ սահմանին վրայ՝ հրամանատարէն եւ վար-չութենէն կ'ողջունուէր եւ հոն կ'առաջնորդուէր, ուր նոյն միջոցին թագաւորը իր կայանը հաս-տատած էր։ Ցիսբոնի մայրաքաղաքին մէջ կ'ըն-դունէր զայն Թագաւորը, շրջապատուած իր մեծամեծներէն եւ բազմած պատուական քա-րերով զարդարուած փղոսկրէ գահին վրայ, մարգարտաշար ապարօշը գլուխը եւ զգեցած շքեղ եւ ոսկեհուռ հանդերձներ[1]։ Դեսպանը սովորական կերպով թագաւորին յարգութիւն ընելէն վերջը՝ կայսեր ընծաներուն հետ նամակը կը մատուցանէ թագաւորին, որ իր քարտու-ղարներէն մէկուն բանալ եւ կարդացընել կու-տայ։ Եթէ թագաւորը բարեյօժար եւ ուրախ զուարթ ըլլայ, դեսպանը նստեցընելով գահին քով պատուոյ հագուստներով[2] եւ ուրիշ ըն-ծաներով կը մեծարէ։ Իսկ եթէ թագաւորը պատերազմի դաշտը գտնուի, պատգամաւորը բանակետղը կ'երթայ եւ անոր արշաւանաց կ'ընկերանայ[3]։

Հռովմայեցի պատգամաւորները քաղա-քական իրերուն խնդիրներու վրայ եղած բա-նակցութեանց առեն, Ճարտասանութիւն թա-

---

1 Հմմտ. Թագաւորին երեւոյթը առ. Թէոփղ. Ի 4. 3 (154). 4. 7 (162)։ Նէօլդէկէ, Տաբարի 222։

2 Նկարագրութիւն ըստ Ֆիրդուսիի (Mohl) 5, 291. 6, 2. 82. 7, 229 եւն։

3 Պրոկոպ. ՊՊ. Ա. 4 (15), Մենանդր Հռետ. 41 (243). օրինակներ կու տանի։

փելով կամ նաեւ տրամասական արուեստ բանեցընելով Թագաւորին վրայ ազդեցութիւն կ'ուզէին գործադրել եւ զանիկա իրենց առաջարկութեանց յօժարեցընել։ Դժբախտաբար այս բանս քիչ անգամ կրցած են յաջողցընել, շատ անգամ իրենց ջանքն ու ճիգը Պարսկին ամբարտաւանութեան կամ խորամանկութեան առջեւ կը խորտակէր[1]։

Իրերը ուրիշ կերպարանք կ'առնուին, երբ արքայից արքան լաւ տրամադրութեան մէջ չըլլար։ Պատգամաւորներուն առջեւ ամէն տեսակ խոչ եւ խութ կը հանուէր՝ դեռ պարսկական արքունիքը ոտք չկոխած, կը ջանացուէր որ անոնց ընդունելութիւնը յապաղուի եւ ընդունելութիւննին ալ սիրալիր չէր ըլլար. Թագաւորը՝ կայսեր անուամբ իրեն եղած առաջարկութիւնները բանի տեղ չդնելով կը մերժէր։ Երբեմն նոյն իսկ սովորական ակնառութիւններն իսկ, որ ազգաց իրաւանց տակ կ'երթային, կը բռնաբարուէին։ Այսպէս Տիբերիոս կայսեր դեսպանները՝ Որմիզդ արքային (579) արքունեաց բարբարոսներուն ամբարտաւանութեան վրայ դառն գանգատներ ըրին։ Գէշ եւ վատառողջ բնակարաններ դրած՝ իբր բանտարկեալ կը վարուէին հետերնին եւ ետ դարձած ատեննին հոս ու հոն տարուբերեցին, այնպէս որ իրական տանջանք մ'եղաւ իրենց դարձը[2]։

---

1 Մանրամասն բանակցութիւններ առ. Մենանդրի Հատւ. 11 (204—206)։ Հատւ. 15 (221. 222)։

2 Տեղեկութիւնը կրնայ կարդացուիլ Մենանդրի քով Հատւ. 55 (256—258)։

Դիւանական գործողութիւնները միշտ պէտք չէր որ դեսպաններ արքունիքէ արքունիք ղրկուելով ըլլար. այս վախճանաւ նաեւ լիազօրներ կ'անուանուէին, որ երրորդ տեղ մը խորհրդակցութեան համար քովէ քով կու գային։ Այսպէս 562ի խաղաղութիւնը, որով բազմամեայ հռովմէական-պարսկական պատերազմը վերջացաւ, այսպիսի ժողովքի մը մէջ գլուխ հանուեցաւ[1]. երբ Յուստինիանու պայազատներու ատեն նոր պատերազմ բացուած էր, 577ին եւ յաջորդ տարիներու մէջ շատ հեղ փորձ փորձուեցաւ յանձնակատարներու ձեռքով եղած բանակցութեանց հիման վրայ կռիւը դադրեցընելու համար[2]։

Ժողովքները սովորաբար Դարասի եւ Մծբնայ մէջտեղը կ'ըլլային, տեղը որոշելը երկու կողման յանձնակատարներու գործքն էր, որ երբեմն դժուարութիւններ կը յարուցանէր[3]. փոփոխակի անվստահութիւնը եւ նախանձը չէր տաներ, որ խորհրդոյ գումարումը ամուր վայր մը, որպիսի էր Դարասը, փոխադրուի. աւելի կը նախընտրէին մօտերը եւ եթէ ուրիշ կերպ չէր ըլլար, բաց դաշտի վրայ խորաններու տակ ժողովուիլ[4]։ Յանձնակատարներուն հետ կու գային

[1] Մենանդր Հատկ. 11 (206 յջ.)։ Ասոր վրայօք վարն աւելի։

[2] Մենանդր Հատկ. 46, 47 (248 յջ.), Հատկ. 60 (260 յջ.)։

[3] Մենանդր Հատկ. 46 (248)։

[4] Մենանդր անդ. "ի սահմանս Դարասայ մերձ առ Դարաս քաղաք հարկանէին խորանս եւ ժողովէին դեսպանք երկուց պետութեանցն"։

մօտակայ սահմաններէն նաեւ բազմութիւն մը բարձրագոյն պաշտօնեաներ եւ նշանաւոր քաղաքացիներ, մէյ մը անոր համար, որպէս զի մասնական խնդիրներու մէջ անոնց օգնեն, մէյ մ'ալ որ անոնց դիրքն ու կացութիւնը արտաքուստ աւելի փառաւոր հանդիսացընեն[1]։

## Ընտանեկան յարաբերութիւններ:

Հռովմայեցւոց եւ Պարսից եւ երկու պետութեանց մէջ անընդհատ տիրող թշնամական միտքը դժուար էր, որ երկու իշխող տանց մէջ ընտանեկան յարաբերութիւն հաստատել տար. սակայն եւ այնպէս կը յիշուին այսպիսի փորձեր։

Նախ յառաջ բերենք դէպք մը, որ իբր թէ հինգերորդ դարուն սկիզբները պատահած ըլլայ։ Պրոկոպիոս իւր Պարսկական պատերազմին պատմութեան ներածութեան մէջ կը պատմէ, թէ Արկադիոս մահուընէն քիչ մը յառաջ՝ իւր որդւոյն վիճակին վրայ հոգերու մէջ՝ իւր կտակին մէջ Պարսից Յազկերտ թագաւորը (Ἰσδιγέρδης, 399—420) մանկահասակ Թէոդոսի խնամակալ դրած եւ անոր պաշտպանութեան մասնաւորապէս յանձնած ըլլայ։ Յազկերտ ալ կտակին որոշումն իմանալէն ետեւ, թուղթ մը գրելով առ ծերակոյտն, ոչ միայն իւր խնամակալութիւնն ընդունած է, այլ նաեւ ամբողջ կառավարութեան ժամանակ իւր բռնած խաղաղական ընթացքով՝ վրան

---

1 Մենանդր անդ. «Մեծամեծք ընիկք երկոցունց պետութեանցն, առաջնորդք սահմանակից քաղաքացն»

գրուած վստահութիւնը լիովին արդարացուցած է[1]։ Պրոկոպէն ետքը այս զրոյցը կը յիշէ Թէոփանէս ժամանակագիրը, յաւելուածով մը, թէ Յազկերտ իր հաւատարիմներէն մին, Անտիոքոս, Բիւզանդիոն խաւրած է, որ մանուկ կայսեր իբր խնամակալ եւ դաստիարակ օգնական ըլլայ[2], եւ թէ Անտիոքոս քանի մը տարիէն Պուլքերիայէն վար առնուած է[3]։ Աւելի յետագայն Կեդրենոս պատմագիրը, որուն յայտնի է թէ կարելի չէ հաւատք ընծայել, Թէոփանէսի պատմածին վրայ կ'աւելցընէ, որ Արկադիոս Պարսից թագաւորին 1000 լիտր ոսկի հրիտակ մը կ'ընէ խնամակալութեան յանձնառութեան համար[4]։ Ահա կը տեսնենք, որ նախնական պատմութիւնը յընթացս ժամանակաց ընդարձակուած եւ զարդարուած է, որով հաւաստալիութիւնը տուժած։ Արդէն իսկ Ագաթիաս, որ Պրոկոպէն քիչ մ'ետքը գրած է իր պատմութիւնը, պատմուածքը տարակուսի տակ կը դնէ։ Իրը իբր իւր ժամանակ տարա-

---

1 Պրոկոպիոս ՊՊ. Ա. 2 (13. 14)։

2 Թէոփանէս 80։ Պրոկոպի հետ համաձայնութիւնը կը հետեւի հետեւեալ դարձուածքներէն, "մի եւ մի վայելեաց (Յազկերտ) ի խաղաղութեան (ընդ Հռովմայեցիս), — զերծեալ (Թէոդոսի) զարքայութիւնն — մինչ դեռ ինչ մանկանն նիւթեցէ"։ Զարմանալի է որ Թէոփանէս χουράτωρ բացատրութիւնը կը գործածէ փոխանակ յն. ἐπίτροπος (= խնամակալ) բառին։

3 Թէոփանէս 82։ Թէ Թէոփանէսի 96 եւ Մաղաղայի քով 361 յիշատակուած ներքինին՝ առաջնորդ (Praepositus) եւ պատրիկ Անտիոքոսը, որ Ցիրերի ատեն շնորհքէ ինկաւ, այն պարսիկ Անտիոքոսն ըլլայ, ընդունելի չէ։

4 Կեդրենոս (տպ. Բոն) 506։

ծուած համբաւ կը յիշատակէ, զոր բաց ի Պրոկոպիոսի պատմութենէն, ուրիշ պատմական աղբիւր մը չի հաստատեր[1]։ Ինքն իսկ հազիւ հաւատալի կը համարի, որ կայսրը օտար եւ բարբարոս թշնամի ժողովրդեան մը մեծին այնպիսի մեծ վստահութիւն ցոյց տուած ըլլայ եւ Պրոկոպիոսին զԱրկադիոս գովելը այն իրողութեան կը վերագրէ, որ Պարսից արքան իբր խաղաղասէր դրացի ընծայեցուց ինքզինքը։ Նորագոյն պատմագիրներ ալ Ագաթիասի քննադատութեան հետեւած եւ Պրոկոպիոսի զրոյցը իրաւամբ իբր անհաւատալի դատապարտած են[2]։ Որչափ ալ իշխանը օրէնքներէն բարձր էր, այսու հանդերձ հռովմէական իրաւանց սկզբանց եւ հայեցողութեանց հետ ամենեւին չէր միաբաներ օտար վեհապետի մը իւր որդւոյն խնամակալ անուանուիլը. Նոյնչափ ալ անհաւանական է, որ Բիւզանդիոնի մէջ թող տային, որ պարսկին մէկը մանուկ կայսեր դաստիարակ դրուի։ Եթէ Պրոկոպիոսի պատմածը իւր անպատմական կցկցանքէն ջոկենք հանենք, առ առաւելն կը մնայ այն հնարաւորութիւնը, թէ Արկադիոս իւր կտակին մէջ որդին Պարսից թագաւորին բարեացակամութեան յանձնած կրնայ ըլլալ[3]։ Աւելի հաւատոյ արժանի է ուրիշ

---

1 Ագաթիաս (տպ. Բոն) 264։ «զի զրոյցք են — համբաւս այս յաճախեալ — ի գիր հարկեալ եւ բանիւք պատմագրաց ոչ փութեմ եթէ յառաջ բերել իցեն այս հանգամանքդ»։

2 Արդէն Ցիւլման, ապա Հոավլինսըն, Շպիգել, Նէօլդեկէ։

3 Նէօլդեկէ. Aufsätze zur pers. Geschichte 103.

թակարդի մը հոտն առաւ, վտանգը մատնանիշ ըրաւ, թէ պարսիկ որդեգիրը իբր Յուստինոսի օրինաւոր ժառանգը, կրնայ ամէնէն աւելի եւ նոյն իսկ իր քեռօրդիէն յառաջ կայսերական գահը պահանջել, եւ խորհուրդ տուաւ միայն երեւութապէս այս խնդրով զբաղիլ, յանձնակատարներ խաւրել Պարսից հետ խաղաղութեան համար բանակցելու, մէկալ կողմանէ անոնց յայտարարել, որ բարբարոսի մը որդեգրութիւնը կերպական յիշատակագրով (անշուշտ այսու կը հասկըցուի իշխանական հրովարտակ մը) կարելի չէ որ տեղի ունենայ, այլ զէնքով ու զարդով[1] (Adoptio per arma)։ Թէ այսու ինչ կը հասկըցուի, պայծառ չի գիտցուիր. թերեւս չենք սխալիր, ընդունելով որ այս ըսուածը հարուստ զէնքերու ընծայատուութենէ մը կը բաղկանար, որով պարգեւառուն պարգեւատուին հետ զինակցութեան եւ տեսակ մը ընտանեկան անդամակցութեան մէջ կը մտնէր, առանց ասկէ կերպական որդեգրութեան իրաւական ազդեցութիւնները հետեւելու[2]։ Պարսից յանձնակատարները իրենց եղած այս առաջարկութիւնը իբրեւ իրենց ինքնակալին անպատուաբեր բան մը՝ մերժեցին, բանակցութիւնները ապարդիւն մնացին եւ Խոսրով, որ արդէն դէպ ի Բիւզանդիոն ճամբայ ելած էր,

---

1 Պրոկոպ ՊՊ. Ա. 11 (54). «ոչ եթէ արձանագիր յիշատակարանօք, այլ զինուք եւ զարդուք պատերազմի գրին յորդեգիրս բարբարոսք»։

2 Հետաքրքրական է այս սովորութեան համար՝ ուրիշ տեղեր դէպքեր գտնել։

քինախնդիր ոգւով ունայնաձեռն ետ դարձաւ։ Այսչափ Պրոկոպիոս։

Մատենագրիս պատմածը՝ թէ լոկ հնարագիւտ կցկցանք է, չի կրնար ըլլալ։ Պատմած իրողութիւնները այնպիսի մերձաւոր անցեալի մը կը պատկանէին, որ ի վիճակի էր զանոնք իմանալու եւ ստուգութիւնը հետազօտելու։

Բայց անկէ կարելի չէ տարակուսիլ, որ Պարսից թագաւորը մտադիր էր եւ ձեռնարկած, որ իւր որդին կայսեր հետ կապակցութեան մէջ մտնէ, ինչպէս նաեւ տարակոյս չի վերցըներ, որ Յուստինոս եւս իրը ծանրապէս առած եւ զայն գործադրելու եղած էր, ի հարկէ ոչ թէ մասնաւոր իրաւական որդեգրութեան ձեւով՝ ըստ հռովմէական իրաւանց եւ նոյնին ժառանգական իրաւանց հետեւութիւններով[1]։ Սակայն Պարսից թագաւորն ալ, որուն ծանօթ ըլլալու էին հռովմէական որոշումները, անշուշտ այս բանին ծանրակշռութիւն չէ տուած, եւս առաւել դիտում ունեցած չէ, այս ճամբով հռովմէական պետութիւնը եւ կայսերական գահը գրաւելու։ Իւր բաղձանքն էր կայսեր եւ իր որդւոյն մէջ կապ մը հաստատել, որուն զօրութեամբ անիկա երաշխաւորութիւն մը պիտի տար, ասոր՝ պարսկական գահը ելլելուն եւ եթէ հարկ ըլլար, զէնքով ալ օգնելու էր։ Հրապարակական գործողութեամբ տրուած "Որդի կայսեր" պատուոյ տիտ-

---

[1] Որդեգրութեան օրէնքները Cod. Just. 8. 47. 10. 11. նորագոյն ժամանակներէ են։

ղուը զինքը լիովին գոհ կը թողուր. բայց առաջարկ մը, որ զինքն իբր ցած բարբարոս կը ներկայացնէր, հարկաւ իւր ունայնապարծ մեծամտութիւնը վիրաւորելու էր[1]։

Մինչեւ ցայժմ հռովմէական քաղաքագիտութիւնը սկզբունք դրած էր չխառնուիլ Պարսկաստանի ներքին խնդիրներուն, որ պակաս չեղան անցեալ ժամանակները։ Այս պատճառաւ շատ բնական էր, որ Յուստինոս այս հիմանց վրայ յեցած՝ Պարսից թագաւորին բաղձանքը կատարել յանձն չառաւ, զոր ի գործ դնելով կրնար վտանգաւոր խառնաշփոթութեանց առիթ տալ։ Եօթանասուն տարի վերջը՝ Մաւրիկ կայսրը Պարսկաստանի մէջ այսպիսի միջամտութիւն մ՚ընելու ելաւ եւ մինչ առաջին Խոսրովին չթողուցին ինքզինքը կայսեր որդի կոչել, անոր համանուն թոռան թոյլ տրուեցաւ[2]։ Խոսրով Բ., մականուամբ Ապրուէզ, այսինքն յաղթող, հօրը Որմզդի սպանուելէն ետքը՝ 590 գահ ելաւ արտաքոյ կարգի աննպաստ պարագաներու ներքեւ։ Որովհետեւ Արեւելեան հռովմէական պետութեան հետ պատերազմը կը տեւէր, որուն բանակները պարսկական սահմաններու մօտ կեցած էին, բայց աւելի գէշն ան էր, որ Իրանի ամենաքաջ զօրավար-

---

[1] Թէոփանէս 167. 168. Պրոկոպի պատմածը համառօտիւ յառաջ կը բերէ, բայց կ՚աւելցընէ թէ Պարսից թագաւորը խնամակալութիւնը յանձն առնուլ տալու համար աղաչած է. նոյնը կ՚ըսէ նաեւ Զոնարաս 14. 2. սակայն Խոսրով նոյն ատեն չափահաս էր եւ խնամակալի պէտք չունէր։

[2] Յաջորդին համար աղբիւրն է Թէոփիղակտոս Սիմոկատտէսի գիրքը։

ներէնմին Վահրամ Չոբին իրեն դէմ զէնք առած էր եւ իբր հետամուտ՝ թագը յինքն գրաւել կը ձգտէր։ Իւր զօրքերէն լքեալ՝ ստիպուեցաւ Խոսրով ժառանգութիւնը թողուլ ու փախչիլ եւ հռովմէական հողի վրայ պաշտպանութիւն եւ պատսպարան փնտռել։ Ասորական Հերապոլսէն, ուր իւր ընտանեաց հետ տեղւոյն հրամանատարին քով ապաստան գտած էր, խոնարհական նամակաւ մը կայսեր դիմեց, հայցելով անոր օգնութիւնը, իբր փրկիչ եւ օգնող բժիշկ՝ Պարսկաստանի կարօտութեանց մէջ [1]։ Իւր դեսպանաց միջոցաւ, որոնք կայսեր առջեւ իւր դատը պիտի պաշտպանէին, իբրեւ օգնականութեան գին՝ խաղաղութիւն հաստատել եւ երկու ծանրակշիռ վայրերու, սակայն յիշուած Դարաս ամրոցին եւ հայկական Մարտիրոսաց քաղաքին յետս դարձուիլը խոստացաւ, որոնք յառաջագոյն հռովմէական ստացուածք էին Պարսից անցած [2]։ Միեւնոյն ժամանակ Վահրամ եւս, որ Խոսրովին փախչելէն վերջը մայրաքաղաքին եւ պարսկական արքունի աթոռին տիրած էր [3], Մաւրիկիոսին հրապուրիչ առաջարկ մ'ըրած էր, եթէ չէզոք մնար, որով կայսրը շատ

---

1 Թէոփիլ. 4. 11. (169)։ Թուղթս անտարակոյս վաւերական է, որուն վկայ է մանաւանդ վերջաւորութիւնը ուր խօսք կ'ըլլայ, որ δωτῆρες τῶν ἀγαθῶν ἄγγελοι (տուողք բարեաց՝ հրեշտակք են)։ Սկիզբը յիշատակած ենք արդէն. էջ 11 ծնթ. 2։

2 Դեսպանին ընդարձակ ճառախօսութիւնը (Թէոփիլ. 4. 13 (174)), ի հարկէ հեղինակին մտացածին գործքն է։

3 Թէոփիլ. 4. 14 (179). Մծբինը եւ Տիգրիսի քանի մը գաւառները թողուլ կ'առաջարկէր։

Նպաստաւոր դիրք մը ստացած էր, այսպէս ըսելու համար իբրեւ դատաւոր՝ երկու կողմնակցութեանց մէջ վճիռ կտրել ձեռքն էր։ Իւր կամքէն կախում ունէր Պարսկաստանի մէջ իրաց ինչպիսի կերպարանք ստանալը։ Որոշեց Խոսրովին թեր ելլել։ Կայսրը պարսաւուած է, պետութեան շահն ըստ բաւականի յառաջ քշած չըլլալուն համար, իւր օգնութեան համար պէտք էր, կ'ըսուի, լաւագոյն պայմաններ դնել[1]։ Կարծենք յանիրաւի։ Որովհետեւ ձեռք բերածը բաւականաչափ նպաստաւոր էր։ Այնչափ ատենէ ի վեր ցանկացած խաղաղութիւնը ստացաւ, որուն մեծապէս կը կարօտէր, Դանուբէն յառաջ խաղացող Աւարաց եւ Բուլգարաց դիմակալելու համար, խաղաղութիւն մը, որ առաջին անգամն էր, որ առանց հարկատուութեան եղանակաւ կատարուած դրամական հատուցման[2] տեղի կ'ունենար եւ ասկէ զատ կորուսեալ երկիրներ ետ կը ստանար. Պարսկաստանի մնասով եղած ուրիշ երկիրներու պահանջում մը նոր գժտութիւններու դուռ կը բանար։ Ինքզինքը Խոսրովին կողմը որոշելուն ամենէն ծանր պատճառն էր իւր հակակրութիւնը, ապստամբին եւ յափշտակիչին՝ ընդդէմ օրինաւոր ժառանգին թիկունք ըլլալու։ Ինքը, որ ինքզինքը յուստինիանեան հարստութեան օրինաւոր ժառանգ կը նկատէր[3], չէր կրնար այս դէպքիս մէջ օրինա-

1 Այսպէս Նէօլդեկէ եւ Գելցէր։

2 Հարկատուութեան խնդիր չըլլալը կ'իմացուի Թէոփիղ.էն 5. 15 (216). "կռեցան դաշինք հաւասար մասամբ"։

3 Տիբերիոս Յուստինոս Բ. ի որդեգիրն էր, Մաւրիկ Տիբերէն իբր յաջորդ որոշուած էր եւ իւր փեսան։

ւորութեան սկզբունքը մատնել։ Զուր չէր դիմած Խոսրով անոր՝ իբրեւ որդի[1]. իբր հայր տար կոչին ականջ կախեց։ Որդւոյ անուամբ[2] պատուեց, առատ դրամական օգնութեամբ նպաստեց եւ Արեւելք գտնուած բանակը անոր տրամադրութեան տակ դրաւ Վահրամին դէմ մարտնչելու։

Այսպէսով ահա տեղի ունեցաւ, որ առաջին եւ վերջին անգամ հռովմէական գունդեր Պարսիկներու հետ քովէ քով՝ իբր ասոնց դաշնակից կռուեցան, որ Միհրի պաշտօնատարներու հետ միասին Ս. Կուսին դրօշին ներքեւ ճակատներ տուին[3] եւ Պարսից արքան իւր գահը հանեցին։ Եւ աւելին։ Յաղթական հանդիսանալէն վերջը՝ երբ հռովմէական օժանդակ գունդերը արձակուեցան, Խոսրովին բաղձանքին վրայ հազար ծանր սպառազէններ մնացին իբրեւ անձնապահ։ Ուստի եւ իրաւամբ կրնար հռովմայեցի զօրավարը՝ հրաժեշտ առնելու ատեն Թագաւորին յորդոր կարդալ, որ միշտ յիշէ, թէ իւր աթոռը Հռովմայեցւոց պարտական է[4]։

---

1 Նամակին վերջաւորանք այսպէս էր. προσφθέγγομαι Χοσρόης ὁ σὸς υἱὸς καὶ ἱκέτης (= ողջոյն տուեալ խօսիմ ես Խոսրով որդի քո եւ աղաչէք)։

2 Թէոփիլ. 5. 3 (194). «կոչեալ որդի Խոսրովու» Թէոփանէս կը սխալի երբ այսու կը համարի թէ իրական որդեգրութիւն տեղի ունեցած ըլլայ. «որդեգրեաց արքայ Մաւրիկիոս Խոսրովու»։

3 Թէոփիլ. 5. 10 (206). ἐγίνετο γὰρ καὶ Χαλδαίοις (այսինքն Պարսից) τὸ τῆς Μαρίας σωτήριον ὄνομα. (= Պարսից եւս անունն Մարիամու եղեւ փրկարար)։

4 Թէոփիլ. 5. 11 (210). Թէոփանէս 207. Ῥωμαῖοι

Արեւելեան աղբիւրներ, ինչպէս Ֆիրդուսի եւ Տաբարի, այս դէպքերու նկարագրութեանց առեն գլխաւոր կէտերու մէջ յոյն աղբերաց կը համաձայնին[1]։ Թագաւորաց մատենին մէջ բանաստեղծական զարդարանքներով եւ բուն պարսկական չափազանցութիւններով յառաջ բերուած պատմութիւններուն՝ թէ ինչպէս եղած են կայսեր ու թագաւորին միջեւ բանակցութիւնները, թէ ինչպէս կայսրը ինքզինքը չորոշած՝ աստղները հարցուցած է[2], ինչպէս նաեւ արշաւանքներու եւ ճակատամարտներու ստորագրութեանց պատմական արժէք չի կրնար տրուիլ։ Յամենայն դէպս հոս ալ կը ցոլանայ այն մեծ ճոխութիւնը, զոր Մաւրիկիոս Պարսիկներուն քով վայլած ըլլալու էր. ինչու որ սովորական պոռոտախօս պարծենկոտութիւնը — զկայսրներն իբր արքայից արքային հարկատու աւատառուներ նկատել — Մաւրիկիոսի նկատմամբ կը պակսի. հարկատուութեան վրայ խօսք իսկ չ'ըլլար։ Նոր է երկու հեղինակներուն յառաջ բերած, Յունաց բոլորովին անծանօթ իրողութիւնը, թէ կայսրը Խոսրովայ հետ կռած դաշինքը հաստատուն գործելու համար իւր Մարիամ դուստրը կնութեան տուած ըլլայ[3]։

Այն կայսերական դստեր պատմութիւնը թագաւորաց գրոց մէջ վիպական կտոր մը կը

---

σὲ τὴν βασιλείαν χαρίζονται. (— Հռովմայեցւոց շնորհեալ է քեզ զթագաւորութիւնն)։

1 Ֆիրդուսի 7, 48 յլ. Տաբարի (Նէօլտեկէ 282 յլ.)։

2 Ֆիրդ. 7, 74–98. „Falathun“ի (Պղատոն) աստղաբաշխական տախտակները կը յիշատակուին։

3 Անդ. 7, 92. Տաբարի 275, 283։

կացուցանէ։ Յանյիշատակ ժամանակաց հետէ աւանդուած ատելութիւնը, որ կար Իրան եւ Ռում պետութեանց մէջ, բառնալու համար, կ'որոշէ կայսրը իր դուստրը Խոսրովին կնութեան առաջարկել։ Թագաւորը իր դեսպաններուն ձեռքով զանիկա կերպապէս խնդրելէն վերջը[1] աղջիկը հարուստ օժիտով մը հռովմէական օժանդակ բանակին հետ թագաւորին կը բերուի. կայսեր դուստրը այնուհետեւ թագաւորին կ'ընկերանայ անոր արշաւանքներուն առեն, իր յաջողակ ճարտարութեամբը հռովմայեցի եւ պարսիկ զօրավարներուն մէջ ծագած գժտութիւն մը կը բառնայ, հնգամեայ ամուսնութենէ մը վերջը որդի մը կը ծնանի, զՇերոյէ եւ ի վախճանի դեղով կը սպանուի Խոսրովին սիրուհիներէն մէկէն, որ նախանձաբեկ էր[2]։ Ճշմարիտ բան մը կա՞յ այս ամէնուն մէջ։

Յունական աղբիւրներէն գիտենք, թէ Մաւրիկ՝ Տիբերի դստեր հետ ամուսնութենէն երեք չկարգուած դուստր ձգած էր, որոնք իր Փոկասի ձեռքով սպանուելէն ետեւ (602) իրենց մօրը հետ բանտարկուեցան[3]։ Մարիամ դստեր եւ նոյնին Խոսրովի հետ ամուսնութեան վրայօք ամենափոքր ակնարկութիւնն իսկ չենք գտներ անոնց քով։ Պարսկական զրոյցին անստուգութեան

1 Ֆիրդուսի 7, 92 յջ. դեսպանները մոլորցնելու համար ի սկզբան փոխանակ իշխանուհւոյն՝ դիւթական պաճուճապատանք մը աղջկանն կը հանուի։

2 Անդ. 7, 135. 146 յջ. 225. 247։

3 Թէոփիլ. 1. 10 (58.) 8. 11 (304/5). 8. 15 (313)։

ապացոյց է նաեւ այն իրողութիւնն ալ, որ Մաւրիկ ամուսնութեան տարիք ունեցող դուստր անկարելի էր որ ունենար, ըստ որում Թագաւորելէ (582) վերջը ամուսնացաւ 590—591ի միջոցին եւ աւելի ուշ ժամանակ մը նկատողութեան չի կրնար առնուիլ։ Ասկէ զատ կրնա՞յ մտածուիլ, որ հաւատացեալ քրիստոնեայ իշխան մը իւր զաւակը Պարսից արքային կանանոցին խորշերը նետել կարենար, նոյն իսկ եթէ ամենայն կերպով թոյլ տրուէր անոր՝ իւր կրօնը դաւանելու։ Նոյն ժամանակուան հայեցողութիւններէն դատելով՝ կրնանք ըսել թէ այս բանս անհնարին էր։ Հազիւ Բիւզանդեանց սաստիկ վատթարանալու ժամանակները, ամենավերջին Պալէոլոգներու օրով կը հանդիպինք, որ քրիստոնեայ իշխանուհիներ տաճիկ սուլթաններու ապարանքները կը փոխադրուէին։ Ահա ասկէ կը տեսնուի, որ Արեւելեայց այս պատմութիւնը անհաւատալի է եւ պատմական արժէքէ զուրկ։ Կայսեր դուստրը իբր Իրանի դշխոյ ներկայացընող առասպելը թերեւս անկէ ելած է, որ ժողովրդական զրոյցը յընթացս ժամանակաց “զԽոսրով որդի կայսեր„ փոխած է “Խոսրով փեսայ կայսեր„ ազգականութեան։

## ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԵՒ ԽՈՍՐՈՎ Ա.

*532ի մշտնջենաւոր խաղաղութիւնը:*

Երբ Յուստինիանոս իւր մօրեղբօր Յուստինոսի մահուընէն վերջը 1 Աւգոստոս 527 իբր միահեծան տէր հռովմէական կայսերական գահն ելաւ[1], պետութիւնը արդէն երկար տարիներէ ի վեր Պարսկաստանի հետ կռուի մէջ էր:

Այս պատերազմի պատճառները անցեալ հին ժամանակներու մէջ պրպտելու է: Թէոդոս Մեծին եւ Պարսից (Վահրամ = Վռամ) Թագաւորին մէջ 387 հաստատուած խաղաղութեան դաշինքը, որ Հայաստանի բաժանումը կը սահմանէր եւ այսով երկու պետութեանց մէջ բացուած երկարամեայ երկպառակութիւնը կը բառնար[2], Արեւելքի մէջ խաղաղութեան երկարատեւ շրջանի մը սկսելուն առիթ կու տար. այս խաղաղութիւնը անցեց ամբողջ հինգերորդ դարու ժամանակամիջոցը: Միայն երկիցս խաղաղութիւնը Թէոդոս Փոքրի ատեն պատերազմական կնճռոտութեանց հանդիպեցաւ, որ շուտով լուծուեցան[3]:

---

1 Արդէն 1 Ապր. 527 գահակից էր. այս պատճառաւ ալ անկէ սկսեալ կը հաշուէ իւր կառավարութեան տարիները:

2 Ց. Գիւտերբոք, Հռովմ. Հայաստան:

3 Այսինքն, 421 եւ 441 տարիներու մէջ:

Սակայն վեցերորդ դարուն սկիզբէն երկու արեւելեան պետութեանց քաղաքական յարաբերութիւնները փոխուեցան եւ սկսաւ ժամանակ մը դժնդակ եւ երկարաձիգ կռիւներու, որ կարճատեւ կամ երկարագոյն զինադադարներով մինչեւ տասնումէկերորդ դարուն առաջին կէսը ձգեցան եւ երկու տէրութիւններն ալ այն աստիճանի ուժաթափ ըրին, որ իսլամի բուռն յարձակման կարող չեղան դիմադրել: Պարսկաստան Արաբացւոց աւար ինկաւ եւ Արեւելեան-Հռովմ Պարսից պատերազմէն յաղթական ելլելով հանդերձ՝ իր Ասիայի եւ Ափրիկէի գաւառները անոնց ձեռքը թողուց:

Նոր պարսկական պատերազմին պատճառը դրամի խնդիր մ'էր: Յառաջագոյն դրուած դաշինքներու մէջ Պարսկաստան յանձն առած էր՝ երկու պետութեանց շահուն համար, ամրացընել ու պահպանել Կովկասեան կապանքները, կասպեան դրունք (πύλαι Κασπίαι) կոչուած, որպէս զի յայնկոյս Կասպից թափառական շրջող վաչկատուն ցեղերու յառաջխաղացութիւնն արգելուի. իսկ Հռովմ ասոր փոխարէն ինքզինքը պարտաւորած էր, Պարսկաստանի դրամական նպաստ մը տալու[1]: Այս վճարքը զոր Հռովմայեցիք սկսած էին իբրեւ ամօթալի հարկատուութիւն նկատել, երկար ժամանակէ ի վեր զանց առնուած էր՝ կրկին ու կրկին ազդարարութիւններէ ետքն ալ: Սակայն գործունեայ եւ պատերազմասէր

[1] Լիւդոս de magistr. III. 52, 53 (244, 245). Պրոկ. Հակտ. 31 (ՀԵՊ. 4. 145):

ճանեցաւ եւ իր որդին Խոսրով Սասանեանց գահն ելաւ[1]։

Արժէ կայսեր եւ արքային արքային անձին եւ նկարագրին վրայ ակնարկ մ'արձակել։ Յուստինիան ոչ իբր մարդ, ոչ ալ իբրեւ վեհապետ մեծ էր[2]։ Իսկ նոյն իսկ ի նկատի չառնունք Պրոկոպի իր Anecdotaներու մէջ լի ատելութեամբ ու չափազանցութեամբ այն նկարագրութիւնները, կայսեր պատմական պատկերը նկարագրի ծանր թերութիւններով արատաւորուած է։ Ստոյգ է կրնար խարդախ, խիստ, նոյն իսկ անագորոյն ըլլալ, իր արքունեաց համար ըրած շուայտութիւնները, մեծածախ շինուածքները, ինչպէս նաեւ մղած բազմաթիւ պատերազմներուն ծախքերը, տէրութեան ելեւմուտքը սպառեցին եւ բնակչաց վրայ տուրք տալու կարողութիւն ա՛լ չթողուցին։ Ո՛չ դիւցազն էր ոչ ալ զօրավար, անձնական քաջասրտութիւն կ'երեւայ թէ չունէր[3]։ Այսու ամենայնիւ արդարութիւնը կը պահանջէ, որ ճանչնանք թէ Յուստինիանոս կառավարութեան հազուագիւտ տաղանդ մ'ունէր, որ աշխատելու անխոնջ ուժին եւ մեն մի գործոց ճշգրիտ հասկցողութեան հետ միացած՝ զինքը ատակ կ'ընէր տէրութեան կառավարութեան զանազան ճիւղերը զարգացընելու եւ յառաջա-

1 Ընդ Ա. 21 (109)։

2 Թէոփանէս 174 զայն ό μέγας կը կոչէ. Նմանապէս Կոստ. Պորփիւր. վասն. Կարգաց Բ. 42 (644. Հրտ. Բ.)։

3 Նիկա կոչուած ապստամբութեան առեն ըրած դերը գոնէ անձնական քաջութիւն ցոյց չի տար։

վրայ, այն առոյգ է, որ ինքը կը գերազանցէ իւր բոլոր նախորդները, որոնք Թէոդոս Ա.էն վերջը կայսերական գահի վրայ բազմեցան։

Իսկ Խոսրովի նկատմամբ, որուն Արեւելեայք Անուշիրվան, այսինքն "անմահ հոգի" յորջորջանքը տուած են[1], երկու հակառակ կողմերէ կը քաղենք մեր տեղեկութիւնը։ Պարսիկ եւ արաբ աղբիւրները, ինչպէս Ֆիրդուսի, Տաբարի եւն իւր մէջ կը նկատեն ժողովուրդը, երջանկացընող իշխանի մը գաղափարականը, իւր արդարութիւնը, քաջութիւնը եւ պատերազմի բախտը կը փառաբանեն, իւր կառավարութիւնը կը պանծացուի իբր ամենաերջանկաւէտ ժամանակը, զոր Իրան եւ իւր ժողովուրդը վայլած է։ Լիովին հաւատարիմ աղբիւրներ կը վկայեն, որ իւր տէրութիւնը դէպ ի արեւելք եւ հիւսիսային արեւելք տարածած է, զինուորականութիւնը նորոգ կազմակերպած, ամբողջ հարկատուութեան մէջ բարենորոգում եւ արդար կարգաւորութիւն խոթած, նոր քաղաքներ ու ճամբաներ շինելու հոգ տարած, միով բանիւ ներքին կառավարութեան մէջ բարեփոխութիւններ մուծած է[2]։

Ուրիշ է Բիւզանդացւոց վճիռը։ Ասոնց նայելով, Խոսրով ամենաասոսկալի եւ անհաշտ թշնամին է իրենց, որմէ ամէն չարիք կարելի է սպասել ու հետը անհնարին է տեւական խաղաղութիւն հաստատել։ Մանաւորաբար Պրո-

[1] Անուանս վրայ տ. Նէօլդեկէ, Տաբարի 136։

[2] Անդ 241 յլ. Ֆիրդուսի 6. 139 յլ. 378 յլ.։

կոպիտ անմնախիտ վճիռը կ՚արձակէ անոր դէմ. զանիկա կը նկարագրէ իբր կեղծաւոր, անագորոյն, արծաթասէր եւ ստախօսութեան, երդմնադրժութեան եւ նոյն իսկ ամէն անմթալի գործողութեանց. իւր ձեռք բերած յաջողութիւնները ըստ ինքեան ոչ թէ իւր քաջութեան, այլ յարափոփոխ բախտին պարտական է[1]։ Ագաթիաս այնչափ միակողմանի եւ նախապաշարեալ չի խօսիր. գոնէ Խոսրովին մեծամեծ յաջողութիւնները կը խոստովանի, որոնցմով Պարսից նախնի եւ նորագոյն թագաւորներուն մէջ ամենահզօրն ու ամենամեծը հանդիսացաւ[2]։ — Իրօք Պրոկոպի ստգտանաց մէկ բաւական մասը հիմ կրնայ ունենալ, որոնց վրայ աւելցընելու է ամբարտաւանութիւնը եւ ինքնապարծ յանձնապաստանութիւնը, բայց նկարագրի հոյակապ գորովուած պակասութիւններէն շատերը արեւելեան բանապետի մը նախատիպ պատկերը կը ստուերագծեն եւ պարսկական ազգային նկարագրին կը համապատասխանեն։ Այսու հանդերձ նշանաւոր իշխող ու Սասանեան հարստութեան ամենահոյակապ թագաւորն էր։ Գիտցաւ արեւմտեան մտաւոր մշակութեան արժէքը գնահատել։ Եթէ նոյն իսկ տարակուսել ըլլայ յունական փիլիսոփայութեան մէջ խորամուխ ըլլալը, բայց

---

[1] Պրոկոպիոս ՊՊ. Ա. 23 (114. 118). Բ. 10 (193). "Էր այր դժնեայ յոյժ„ եւն Aneed. 119. "բայց բարուց նորա էին յոյժ չարք„

[2] Ագաթիաս Դ. 29. (271). "արար իրս բազումս եւ մեծամեծս յոյժ — եւ անցոյց զանցոյց զամենեքումբք, որ յառաջ քան զնա թագաւորեցին ի վերայ Պարսից„

իրողութիւն է, որ Հռովմէական պետութենէն վտարուած Նոր-պղատոնականաց ապաւէն ըրաւ Տիսբոնը եւ ջերմապէս բարեխօս եղաւ Յուստինիանոսի, որ անվնաս եւ դառնալ կարենան իրենց հայրենիքը[1]։

Յուստինիան եւ Խոսրով, ահա երկու ինքնակալները, որոնց կամքէն կախուած էր իրենց ժողովրդոց եւ ամբողջ Արեւելքի բախտը՝ գրեթէ 40 տարի շարունակ։

Թէպէտեւ յայտնի պատերազմի մէջ՝ բայց երկուքն ալ, Բասիլեւսը եւ Շահին-շահը, պատճառներ ունէին խաղաղութեան դաշինք դնելու. Յուստինիան, վասն զի Վանդալաց դէմ արդէն պատրաստուած ծրագիրները գործադրելու միտք ունէր, զոր միայն այն ատեն կրնար, երբ ապահով ըլլար, որ արեւելեան սահմանագծերու վրայ հանդարտութիւնը կը տիրէ. իսկ Խոսրով, որովհետեւ իւր գահին վրայ ինքզինքն ամուր չէր տեսներ եւ ստիպուած էր գահէն հետամուտներուն ու ներքին խռովութեանց դէմ մարտնչիլ[2]։

Դեռ Կաւատ չմեռած՝ Հռովմայեցի բանագնացներ, Ռուփինոս պատրիկը եւ Հերմոգենէս պաշտամանց մագիստրոսը, Հռովմէական բանակետղը երեւցան եւ անոր մահուան լրոյն վրայ՝ զօրավարները իրօք ալ դադրեցուցին թշնամութիւնները, որպէս զի պատգամաւորները կարող ըլլան Տիսբոնի արքունիքն երթալ։ Պրոկոպիոս՝

---

1 Հմտ. մանրամասնութեան համար Ագաթիաս, Բ. 28 (126 յէ.)։

2 Պրոկ. ՊՊ. Ա. 23 (114 յէ.)։

Թագաւորին հանդէպ աստնց ցուցուցած վարմունքը կը նկարագրէ իրենց ոչ շատ արժանավայել, վասն զի մինչ կը ջանային խաղաղութեան դաշն կապել նպաստաւոր պայմաններով, իրենք անոր պահանջները յետակաւս ընդունելու հարկադրուեցան։ Շատ անգամ բանակցութիւնները ընդմիջել հարկ եղաւ Բիւզանդիոն հարցում ընելու համար, բայց ի վերջոյ միաբանութիւն եղաւ եւ խաղաղութիւնը 532/533 տարւան ընթացքին մէջ հաստատուեցաւ[1]։ Դեսպանները դրուած դաշինքը Բիւզանդիոն բերին, եւ Յուստինիան, որուն կեանքը քիչ մը յառաջ ծանօթ կրկէսի խռովութեամբ, Նիկա ապստամբութիւն անուանուած, մեծապէս վտանգուած էր, աւելի յօժարութեամբ դաշինքը վաւերացուց, քանի որ այսուհետեւ Ափրիկէի նկատմամբ իւր ծրագիրները ազատ համարձակ կրնար ի գլուխ տանիլ։

Որոշ ժամանակի մը համար Պարսից հետ դաշն կապելու ցայժմ տիրող սովորութեան հակառակ, այս անգամ ժամանակամիջոց մը նկատի չառնուեցաւ, այս անգամ՝ երկու պետութեանց մէջ անվերջ խաղաղութիւն ‚εἰρήνη πέρας οὐκ ἔχουσα‘ — մշտնջենաւոր խաղաղութիւն — տիրելու էր, պերճաբանութիւն (Flosculus) մը, որ. ինչպէս փորձը ցուցուց, երկար տեւողութեան

---

1 Բանակցութեանց վրայ տ. Պրոկ. ՊՊ. Ա. 22 (111–114)։ Պրոկոպիոս բացայայտ կ'ըսէ. կայսեր կառավարութեան վեցերորդ տարին. իսկ այս տարին կը սկսէր 1 Ապրիլ 532։

երաշխաւորութիւն չտուաւ[1]։ 31 տարի յառաջ սկսած պատերազմը այժմ վերջ գտած էր. Պարսիկն էր որ այս խաղաղութեամբ յաղթական կ'ելլէր, ինչու որ պայմանները Հռովմայեցւոց համար ոչ պատուաբեր եւ ոչ մանաւանդ նպաստաւոր էին։ Մինչ երբեմն պատերազմին առիթ տուած էր Կասպեան կիրճերուն համար սահմանուած բարդուած դրամին զլացումը, այժմ Յուստինիան ստիպուած էր յանձն առնուլ ամենախիստ պայմանը, այսինքն մէկ անգամէն իբր խաղաղութեան գին եւ միանգամայն իբր անվճար նպաստից հատուցում, հաշուել տասնումէկ հազար լիտր ոսկւոյ խիստ տուրքը[2] (տասը միլիոն մարկէն աւելի)։

Երկրորդ կէտը կը հայէր Դարաս բերդին[3], որ հռովմէական Միջագետաց մէջ՝ Մծբնայ դիմաց, գրեթէ Պարսից սահմանագիծը կը շօշափէր։ Թէոդոս Բ.ի Պարսից Յազկերտ Բ. Թագաւորին հետ 441 դրած դաշինքով մը, երկու կողմերն ալ ինքզինքնին պարտաւորած էին իրենց սահմաններուն վրայ նոր ամրութիւններ չկառու-

---

1 Պրոկոպ. ՊՊ. Ա. 22 (111. 114). Բ. 4. 5 (165. 171)։ Ըստ Մաղաղայ, Ժաման. 477. խաղաղութիւնը իբր թէ ἄχρι τῆς τῶν ἀμφοτέρων ζωῆς, ուստի մինչեւ երկու ինքնակալաց կենաց վերջը կնքուած էր. բայց անիկա ստոյգ չի կրնար ըլլալ։

2 Պրոկ. անդ. δέκα καὶ ἔκατον κεντηναρίον. — Ոսկւոյ լիտրը 913, 59 մարկի արժէք ունէր, Marquardt, Röm. Staatsverwaltung, Բ. 70.

3 Դարասի վրայօք տ. Մաղաղա 399, Պրոկ. de aedif. II. 10 (210. 220), ՊՊ. Ա. 10 (49), Լիւդոս de magistr. III. 26 (221), III. 46 (241).

ցանել: Սակայն Անաստաս կայսրը այս դաշինքին հակառակ՝ ցայժմ բաց Դարաս քաղաքը զօրեղ ամրութիւններով շրջափակեց եւ զայն Պարսկաստանի դէմ կարկառեալ՝ միշտ երկիւղ ազդող յարձակման ու պաշտպանութեան կայան մ'ըրաւ: Գաւառին հրամանատարը Միջագետաց դուքսը, հոն հաստատուած էր իր նիստը[1]: Պարապ տեղ Պարսից կողմանէ գանգատներ եղան դաշանց եղծուելուն դէմ եւ պահանջուեցաւ ամրութեանց քանդումն: Խոսրով այժմ Հռովմայեցւոց հանդէպ այնչափ զիջաւ, որ բաւականացաւ այնու, որ Հռովմայեցիք յանձն կ'առնուին դուքսին հրամանատարութիւնը Դարասէն ուրիշ տեղ փոխադրել: Հետագայ ժամանակներն ալ Դարասի խնդիրը կռուի առարկայ մնաց միշտ: Դաշանց մէջ յայտնի որոշուած էր, որ պատերազմի ժամանակ գրաւուած վայրերը ետ դարձուելու են. դժուարութիւններ ելան բանակցութեանց առեն՝ Լազիստանի (Լազիկա, հին Կողքիս) մէջ Պարսից գրաւած տեղերը թող տալու վրայօք, վասն զի Խոսրով այս տեղերը չէր ուզեր ձգել: Յուստինիան, որուն՝ Ռուփինոս խնդրոյ նիւթ կազմող այս կէտին վրայ անձամբ տեղեկութիւն տուած էր, դեգդեւիլ սկսաւ, ի սկզբան տեղի տալ կ'ուզէր, բայց յետոյ իւր հրահանգը ետ կոչեց, այնպէս որ քիչ մնացած էր խաղաղութիւնը կ'աւրուէր. վերջ ի վերջոյ Թագաւորը տեղի տուաւ եւ յանձն առաւ թողուլ Լազեան

---

1 Պրոկ. ՊՊ. Ա. 22 (111). ὁ τῶν ἐν Μεσοποταμίᾳ στρατιωτῶν ἄρχων.

վայրերը. այս բանս Հռովմայ համար թանկագին յաջողութիւն մըն էր, վասն զի գէթ ասով իրօք ճանչցուեցաւ, որ Լազիկա հռովմէական շրջանակին մէջ կ'իյնար եւ պէտք էր Պարսից ազդեցութենէն դուրս հանել[1]։

Այսչափ են այս դաշանց Պրոկոպի հաղորդած պայմանները։ Մաղաղաս ժամանակագիրը անսովոր պայմանաւորում մ'ալ կը յիշատակէ, որու՛ն համաձայն երկու ինքնակալները զիրար ոչ միայն իբր եղբայր պիտի նկատէին, այլ նաեւ միաբանած էին հարկ եղած ատեն փոխադարձաբար իրարու դրամով ու զէնքով օգնել[2]։ Ասոր համեմատ դաշինքը լոկ խաղաղութեան դաշնաւորութիւն չէր, այլ միանգամայն կերպական նիզակակցութեան դաշն։ Կրնա՞յ սակայն ընդունուիլ, որ Պրոկոպ ճիշդ ալ պայմաններուն այս ամենածանրակշիռը անյիշատակ թողուցած ըլլայ։ Եւ ի՞նչպէս։ Կրնա՞ր Յուստինիանոս Գոթացւոց դէմ պատերազմ՝ ըրած ատեն պարսկական օգնութիւն պահանջելու ելլել, կամ Խօսրով իւր դաշանց զօրութեամբ, կրնա՞ր Հռովմայեցիներէն թիկունք պահանջել, տուրանեան բարբարոսաց դէմ իւր ձեռնարկութեանց ժամանակ։ Մաղաղաս բաւական անվստահելի հեղինակ մըն է եւ քանի որ աւանդած լուրը շատ անհաւանական կ'երեւայ, բացարձակապէս մերժելի է։

---

1 Պրոկ. անդ։

2 Պրոկ. անդ. Մաղ. 477. «զի թէ պէտք իցեն ընչիւք եւ կենօք միմեանց թիկունք եղիցին անկոխիւ»։

Վեցերորդ դարուն հռովմէական պարսկական պատերազմներուն առաջին գործողութիւնը 532—533ի խաղաղութեամբ կը վերջանայ[1]։

## Երկրորդ հռովմէական-պարսկական պատերազմը:

## Բանակցութիւններ զինադադարի համար:

## 540—556:

Ամբողջ ութը տարի Բիւզանդիոնի եւ Պարսկաստանի մէջ կնքուած խաղաղութիւնը չպղտորեցաւ։ Յուստինիանոսի համար ժամանակամիջոց մ'եղաւ ան՝ ներքուստ բարենորոգութիւններ ընելու եւ արտաքուստ քաղաքական յաղթանակներ տանելու։ Այս ատեն կ'իյնայ մեծ օրինագրքին աւարտումը, վարչական նոր կարգաւորութիւններ արեւելեան երկրամասերուն համար[2] եւ բազմաթիւ ամրութեանց շինութիւններ պետութեան սահմաններուն պաշտպանութեան համար. այս ժամանակ է դարձեալ՝ հիւսիսային Ափրիկէի գրաւումը եւ Գոթաց պետութեան կործանումը Իտալիայի մէջ։ Սակայն մինչ մէկ կողմէն Գոթաց գերի բռնուած թագաւորը ձաղանօք մայրաքաղաքի մէջ կը ցուցադրուէր, անդիէն փոթորիկ մը կը բարձրանար արեւելքի մէջ։

---

1 Յուստինիան Պարսից հետ կնքուած խաղաղութիւնը կը յիշէ 16 Դեկ. 533ի ծանօթ „Δέδωκεν" սահմանադրութեան սկիզբը. սակայն Περσικός յաղթական յորջորջանքը առնելու չէ համարձակած։

2 Հմմտ. Օրինագիրք 8. 24–31.

Յուստինիանոս յաղթութիւնները Խոսրովին մեծ մտատանջութիւն կը պատճառէին։ Իրօք է Վանդալաց նուաճումէն ետքը կայսեր շնորհաւորութիւն ըրաւ երկդիմի եղանակաւ մը, բայց Պարսից վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ այն պատգամաւորութիւնը, որով Վիտիգէս Թագաւորը իւր նեղ դրութեան մէջ Խոսրովին օգնութիւնն ու միջամտութիւնը կը խնդրէր ընդդէմ Յուստինիանոսի. Հեռաւոր Արեւելքը՝ Արեւմուտքի խառնաշփոթութեանց մէջ խոթելու զարմանալի փորձ մը[1]։ Խոսրով չէր կրնար անտես ընել այն վտանգները, որ իշխանութեան մը աճումը եւ ուրիշ իշխանութեան մը յօգուտ Հռովմայեցւոց պետութեան եղծումը՝ Պարսկաստանի համար հետեւրնին կրնային բերել։ Հռովմէական Հայաստանի մէջ տեղւոյն փոխարքային կամայականութեան դէմ ապստամբութիւն մ'ելաւ, եւ Հին Արշակունի սերունդէն փախստական մեծամեծներ արքայից արքային պաշտպանութիւնը խնդրեցին։ Այս ամէնը իւր ներսը խմորեցին այն որոշումը, որ խաղաղութիւնը աւրէ։ Բարուրանքներ չէին պակսեր։ Ճիշդ ալ Յուստինիան Մունդիր եւ Հարիտ կոչուած երկու արաբ իշխանութեանց պայքարին մէջ խառնուած էր, Թուղթ ու ընծայ խաւրած էր առաջնոյն, որ Պարսկաստանի հպատակ էր. այս բանս Պարսկաստանէն վտարանջել տալու փորձ մը համարուեցաւ[2], ինչպէս որ իբր թէ սադրած ըլլայ Հոնաց Պարս-

---

[1] Պրոկ. ՊՊ. Բ. 3 (159 յէ.)։

[2] Արաբացւոց վրայ վարը ընդարձակ։

կասսան արշաւելու։ Մինչ Բիւզանդիոնի մէջ հանդէսներու հետ էին եւ դէպքերէն յանկարծակիի եկան, Խոսրով 539 աշնան հռովմէական երկիրը յարձակելու կը պատրաստուէր։

Այժմ Յուստինիանոսի աչքին առջեւ պատկերացաւ երկու ճակատով պատերազմի մը տեսիլը։ Այս անակնկալ գործողութեան մէջէն կրնա՞ր ելլել։ Իր ամենալաւ բանակը Իտալիա կը գտնուէր, զոր կարելի չէր ետ քաշել, ինչու որ գոթական նոր ապստամբութիւն մը հոն ամենայն ինչ տակնուվրայ ըրաւ։ Իսկ արեւելեան սահմանը մշտնջենաւոր խաղաղութեան վրայ վստահացած՝ զօրքէ թափուր էր։ Բեղիսար, որուն վրայ կայսրը իր յոյսը դրած էր, ստոյգ է Բիւզանդիոն էր, բայց զօրք ու միջոց կը պակսէր իրեն։ Ջուր տեղ փորձեց կայսրը մեկնողական նամակաւ մը Խոսրովին միտքը փոխել. ասիկա պատասխանի անգամ արժանի չըրաւ զանիկա[1]։ Յուստինիանու համար այսպիսի աննպաստ պայմաններու մէջ երկրորդ մեծ պարսկական պատերազմը սկսաւ։

Պատերազմի դէպքերը հոս այնչափ միայն կը շօշափուին, որչափ դիւանագիտական եւ ազգային իրաւական խնդիրներու լուսաբանութեան կրնան ծառայել։ Պատերազմները երկու անջատ ասպարէզներու վրայ տեղի կ'ունենային, մէկ կողմանէ Եփրատի երկիրներու վրայ, միւս կողմանէ Սեւ ծովու մօտ Լազիստանի մէջ։ Հոս նախ եւ յառաջ առաջինը նկատողութեան կ'առնունք։

[1] Պրոկ. ՊՊ. Բ. 4 (169)։

Խոսրով պատերազմն սկսաւ 540 գարնան նախայարձակ ըլլալով Ասորւոց երկիրը, ուր հռովմայեցի զօրավարներուն անկարողութեան շնորհիւ՝ պետութեան երկրորդ մայրաքաղաքը, աշխարհածանօթն Անտիոք առանց կռուի գրաւեց[1]։ Սակայն եւ այնպէս Պարսից համար այս ոչ շատ պատուաբեր արշաւանքը կը կայանար հարստահարելու, կապուտ կողոպուտ ընելու եւ թշուառ բնակիչները գերի վարելու վրայ, ուստի մեծ չափով կատարուած իրական աւազակական ասպատակ մը։ Յաջորդ տարիները (541—544) կատարուած Միջագետք ու Հայաստան յարձակումներն ալ նոյն նկարագիրն ունէին, որոշ գործողութեան ծրագիր — ըսենք՝ ընդ միշտ կամ առժամանակեայ գրաւում հռովմէական երկրի — կը պակսէր։ Զինուորական ձեռնարկութեանց մէջ Խոսրով ի հարկէ չգերազանցեց իւր թշնամին։ Յուստինիանոս արեւելքի համար լոկ անկիրթ, խեղճ սպառազինուած ու անկանոն գունդեր (մեծաւ մասամբ օտար թոշակաւորներ) ունէր[2]. այս պատերազմին մէջ Բելիսար իսկ չկրցաւ ոչ նոր դափնիներ քաղել, ոչ ալ թշնամւոյն ծանր վնաս հասցնել։

Յուստինիան Պարսից հետ խաղաղութիւնը հաստատել ամենայն կերպով կը բաղձար, որովհետեւ Իտալիայի մէջ իւր ձեռուըները կապուած էին եւ ստիպուած էր ամբողջ զօրութիւնը քովէ քով բերել գոթական ապստամբութեամբ հոն

1 Ընդարձակագոյնս առ Պրոկ. ՊՊ. Բ. 7–9 (181 յջ.)։

2 Պրոկ. ՊՊ. Բ. 29 (236)։

վտանգուած գիրքը պահպանելու համար։ Այդէն Անտիոքի քով՝ բանակելով մէջ իր դեսպանները Խոսրովին հետ բանակցելու սկսած էին եւ տակաւ ինքզինքը պատրաստ ցոյց տուած էր խաղաղութեամբ հեռանալու, եթէ տար գինոց 2000 լիտր ոսկւոյ հատուցում մը անմիջապէս վճարուէր եւ ասկէ զատ տարուէ տարի 50 լիտր ոսկւոյ տուրք մը տրուէր։ Պրոկոպիոսի տարագրութեան համեմատ Յուստինիանի խաղաղութեան այս պայմաններուն թղթով հաւանութիւն տուած է եղեր. պատահով ըսելով՝ որ այսու հաշտութիւնը անցի անցած է. բայց ետեւէն իր հաւանութիւնը ետ առած է, վասն զի Խոսրով բազմաթիւ ասորական քաղաքներէ հարկահանութեամբը եւ Դարաս ամրոցն առնելու փորձովը իբր թէ յանցաւոր եղած էր, պաշտպանութիւնը եւ ազգաց իրաւունքը յայյանդիման ոտքի տակ առած ըլլալով[1]։ Սակայն Պրոկոպիոս Դարսէց արքային դէմ իր ազգային ատելութեամբը անտեղի կշտամբութեան մը յանգած է։ Հաշտութիւնը կատարեալ եւ թըղթով կնքուած չէր դեռ. տակաւին եղածը բանակցութենէ անդին չէր անցներ, վերջնական կապուած չէր. պատերազմի տուրքը, որ կախուած էր Խոսրով խաղաղութեան հաստատութիւնը, ոչ վճարուած էր, ոչ ալ հատուցուած. ուստի Խոսրով իր տեսակէտէն նկատելով՝ արդարեւ իրաւունք ունէր ինքզինքը պատերազմի

1 Պրոկ. ՊՊ. Բ. 7. 10 (182 էլ. 196. 197)։

վիճակի մէջ համարելու եւ իրեն հաճոյ երեւցած հետեւութիւններն հանելու։

Հազիւ 545 բանակցութիւնները դարձեալ սկիզբ առին եւ Խոսրով յօժարական էր։ Նախընթաց արշաւանքներէն համոզուած էր, որ Եփրատի քովերը շահելու բան մը չունի եւ այս միջոցին, ինչպէս վերջէն դեռ կը տեսնենք Լազիկայի մէջ կռուան գտած էր իր ոտից եւ նոյնին իբր գործողութեան նպատակակէտ ծանրակշռութիւնը ճանչցած էր։ Դարձեալ իւր որդւոց միոյն ապստամբութիւնը զսպելու հարկը իւր գործունէութեան տարբեր ուղղութիւն մը տուած էր[1]։ Այսպիսի տրամադրութեամբ ընդունեցաւ Յուստինիանու դեսպանները — Կոստանդին եւ Սերգիոս — իւր արքունիքը։ Սակայն խօսակցութեան միջոցին սկզբունքի հակառակութիւն մը անմիջապէս մէջտեղ ելաւ։ Յուստինիանոս լիուլի խաղաղութիւն կը ցանկար թէ արեւելքի եւ թէ հիւսիսի համար։ Իսկ Խոսրով մտքէն չէր անցըներ թողուլ Լազիկայի մէջ ձեռք բերած դիրքը, ուստի Լազիկայի վրայօք ամէն վիճաբանութիւն մերժեց եւ յայտնեց, թէ պատրաստ է հնգամեայ զինադադար մը շնորհելու, եթէ անոր փոխարէն իւրաքանչիւր տարւոյ համար իրեն կանխաւ 400 լիտր ոսկւոյ, ուստի ընդ ամէնը 2000 լ. ոսկւոյ հատուցում ըլլուի. զինադադարը միայն եւ միայն արեւելեան

1 Անուշազատի (Ἀνασώζαδος) ապստամբութեան վրայ հմմտ. Պրոկ. Գ. Պ. Դ. 10 (504 յջ.), Նէօլդեկէ, Տաբարի 467–474։

սեր հետ վերջնական խաղաղութեան մը համար բանակցիլ, սակայն արեւելեան հռովմէական պետութեան արքունիքը դեսպանին տասնամսեայ դադարման միջոցին հաշտութիւն չեղաւ, վասն զի ինչ ինչ կէտերու մէջ տարաձայնութիւնը մնաց։

Երկու պետութեանց քաղաքական յարաբերութիւնները զինադադարի ատեն էական փոփոխութիւն մը կրած չըլլալով՝ նոյն պարսիկ դեսպանը Բիւզանդիոն երկրորդ այցելութեան մը ատեն կրցաւ կայսեր հետ յամարցընել, որ զինադադարը հինգ տարի եւս երկարի։ Ասոր դիմաց կայսեր ընելիք զոհը չնչին բան չէր. ստիպուած էր դարձեալ 2000 լիտր ոսկի հինգ տարիներուն համար եւ ասկէ զատ՝ այս միջոցին անցած մէկուկէս տարուան ժամանակամիջոցին համար 600 լիտր ոսկի, ամբողջը կանխաւ եւ մէկ անգամէն վճարել։ Ինքզինքը պատրել կը ջանար այն չոր մխիթարանքով, թէ ամբողջական վճարումը իբր տուրք չէր կրնար համարուիլ[1]։ Սակայն ուրիշ էր Բիւզանդիոնի մէջ ընդհանուր կարծիքը, որուն հայեցողութիւնը Պրոկոպիոս մերկապարանոց կերպով ու խիստ բառերով կ՚արտայայտէ։ Իրեն նայելով՝ ամէնքը կայսեր տկարութեան ու տեղի տալուն վրայ դառնացած էին եւ զայրացմամբ երեսը կը զարնէին, որ $11\frac{1}{2}$ տարի կատարուած վճարումներով՝ պետութիւնը բարբա-

---

1 Պրոկ. Գ.Պ. Դ. 15 (537). — մի երեւիցի հարկս հարկանել ամ ըստ ամէ։

ձիլ զբաղցընել տուաւ, ինքնին 541 հզօր բանակաւ Լազիկա մտաւ, հռովմէական ակար զահանորդները Պետրա մղեց եւ հռովմէական իշխանութեան այս վերջին յենակէտն ալ գրաւեց լմնցուց։ Այսպէսով կորսուեցաւ Լազիկա Հռովմայեցւոց համար եւ անցաւ Պարսից ձեռքը։

Այս յաջողութենէն վերջը՝ Խոսրով ձեռնամուխ եղաւ Բիւզանդիոնի դէմ այնպիսի ծրագիր մը գլուխ տանելու, զոր կարելի է յանդուգն, չափէն անդին եւ նոյն իսկ բախտախնդրական կոչել, ծրագիր մը, որ անոր քաղաքագիտական հայեցողութիւնը տարբեր լուսով կ'երեւցնէ։ Ինչպէս մեր օրերը Ռուսաստան կը ճգնի դէպ ի Հնդկաց Ովկիանոս անցք մը ձեռք անցնելու, այսպէս ալ նոյն միջոցին Պարսից Թագաւորը Սեւ ծովու հետ հաղորդակցութիւն ունենալու ետեւէ ինկած էր, որպէս զի հոստեղէն որոշիչ հարուած մը իջեցնել կարենայ։ Մէյ մը որ ծովեզերքը ձեռք բերէր, հնարաւոր կը կարծէր ասկէ՝ կամ ցամաքի վրայէն պոնտական գաւառներէն դէպ ի Կոստանդնուպոլիս յառաջանալ, կամ ծովէն նաւատորմղով մը մայրաքաղաքին վրայ յարձակում գործել[1]։ Ձեռնարկը իրական մտադրուած էր, պատրաստութիւնը՝ նաւաշինութեան փայտը հայթայթելով սկսած էր եւ Յուստինիան ինքնին կ'երեւայ թէ այսպիսի ծրագրէ մը վախ ունէր։ Իրեն հետ եղած զինադադարը գործադրութեան արգելք չէր հանդիսանար, վասն զի խաղաղու-

---

1 Պրոկ. ՊՊ. Բ. 28 (283)։ Հմմտ. Նաեւ ԳՊ. Դ. 8 (490)։ ՊՊ. Բ. 15 (221) Ագաթիաս 18 (104)։

*Թիւնը կամ լաւ եւս Հանգիստը երաշխաւորուած էր պետութեան՝ լոկ Եփրատի վրայ եւ ոչ այլուր. ուստի Բիւզանդիոնի վրայ յարձակում մը ամենեւին ազգաց իրաւանց հակառակ դաշանց եղծում չէր։ Իսկ թէ արդեօք այդ յանդուգն ծրագիրը գործադրելի էր, այդ ուրիշ խնդիր է։ Կոստանդնուպոլիս բաւականէն աւելի յարձակում կրած է ծովէն ու ցամաքէն թէ՛ հին եւ թէ նորագոյն ժամանակներս, բայց կարող եղած է իր առանձնայատուկ դրքին պատճառաւ, աւելի ծանր պարագաներու մէջ դիմադրաւել։ Խոսրով ստիպուեցաւ իւր գեղեցիկ գաղափարէն ետ կենալ, վասն զի քիչ մը ետքը պարագաները Պարսից համար աննպաստ կերպով փոխուած էին։ Լազերը, որ Բիւզանդիոնէ քակտելով իրենց վիճակին բարւոքում կը յուսային, պարսկական ծանր լծին տակ մնալով խաբուեցան եւ ուզելով զայն թօթափել, Յուստինիանու օգնութիւնը խնդրեցին։ 549—556 տեւող լազեան պատերազմը վերջ ի վերջոյ Հռովմայեցիք շահեցան. Պարսիկները ծանր պարտութիւններ կրեցին եւ մինչեւ Իբերիայի եւ Պարսկահայաստանի սահմանները հալածուեցան։ Գրեթէ բովանդակ Լազիկա դարձեալ Հռովմայեցւոց ձեռքն ինկաւ[1]։*

*Պարսից թագաւորը այս միջոցին պատերազմէ ձանձրացած էր. խելամուտ եղած էր, թէ Լազիկա նորոգ ջանքերով ալ կարելի չէ դար-*

---

1 Պատերազմին սկզբնաւորութեան վրայ տ. Պրոկ. Գ.Պ. Բ. 7 (488 յջ.) 15 (538 յջ.), շարունակութիւնը կը պատմէ Ագաթիաս Գիրք Գ. եւ Դ.։

ձեւով ձեռք բերել եւ իրեն համար ալ կորսուած է։ Եւ որովհետեւ հինգ տարուան համար եղած երկրորդ զինադադարն ալ վախճանին կը մօտենար, այս երրորդ անգամ ըլլալով Բիւզանդիան խրկեց իւր քաջ դիւանագէտը, որ կայսեր հետ 556 ապագայ խաղաղութեան իբր պատրաստութիւն ընդհանուր զինադադար մը հաստատեց, որ Լազիկայի վրայ ալ կը տարածուէր, առանց տեւողութեան չափը որոշելու եւ իրաց կերպարանքը (Status quo) պահելու հիման վրայ։ Երկու կողմերն ալ մինչեւ հաշտութիւն կնքուիլը երկուստեք գրաւուած երկիրները կրնային պահել. դրամական հատուցման խօսք չկար այս անգամ. — պատուաբեր դաշնագրութիւն մը Հռովմայեցւոց համար[1]։

Որոշակի կարելի չէ ըսել թէ վերջնական խաղաղութեան հասնելու համար ինչու դարձեալ հինգ տարի պէտք եղաւ։ Թերեւս անոր համար, որ ինքնակալներէն մէկն ալ չէր ուզեր իբր խաղաղութեան առաջին ցանկացող մէջտեղ ելլել, որպէս զի չըլլայ թէ ասով տկարութեան երեւոյթ մը ցոյց տայ եւ հակառակորդին առիթ ընծայէ չափազանց պահանջումներ ընելու։ Տեւական խաղաղութեան մը պէտքը երկակողմանի ալ կար։ Յուստինիան յառաջ խաղացող Հոնաց ու Աւարաց հետ բաւական զբաղում ունէր[2]։ Անկէ զատ իւր ալեւորեալ տարիքին մէջ ըլլալով —

---

1 Ագաթիաս Դ. 30 (275)։

2 Հոնաց յարձակմանց նկատմամբ տ. Ագաթիաս Դ. 11 եւ յլ. (299 յլ.)։ Մենանդր Հատ. 3 եւ յլ. (202)։

գրեթէ ութսնամեայ էր — կը բաղձար պետութիւնը խաղաղ վիճակի մէջ իւր պայազատին ձգելու[1]։ Իսկ Խոսրով նոյն ժամանակ բոլոր հոգւով ու մարմնով եռեւէ ինկած էր իշխանութիւնը դէպ ի արեւելք ընդարձակելու, ուստի աչքը արեւմուտքէն դարձուցած էր։ Մանաւանդ որ ուրիշ վտանգ մը կը սպառնար։ Ովքսոս գետին անդիի կողմը Թրքական ցեղեր հզօր պետութիւն մը կազմած էին եւ եթէ նոյն ատեն իրենց խաքանը տակաւին խաղաղութեան պահուելուն կողմն էր, սակայն եւ այնպէս կրնար կասկածուիլ, որ Իրանի դէմ՝ Բիւզանդիոնի հետ կրնայ միանալ, ինչպէս վերջէն եղաւ ալ։ Այս վտանգին առջեւն առնելու էր արեւմտեան դրացւոյն հետ խաղաղութեան դաշն կապելով[2]։

562ի խաղաղութիւնը։

562ի աշնան տեղի ունեցաւ այն խաղաղութիւնը, որով երկրորդ հռովմէական-պարսկական պատերազմը վերջացաւ։ Այս խաղաղութեան նկատմամբ վստահելի աղբիւր է Մենանդրի (անուանեալն Պրոտեկտոր) պատմութիւնը, որ դժբախտաբար ծանօթ է քաղուածքներով միայն եւ շարունակութիւն է Ագաթիասի՝ ներկայացնելով մեզի 558—582 տարիները[3]։ Իւր

[1] Ագաթիաս Ե. 14 (306), Մենանդր Հատւ. 4 (205)
[2] Նէօլդեկէ, Տաբարի 158 յղ.։
[3] Մենանդրի վրայ համեմատէ Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur, 273 ff. De legationibusի քաղուածոյքները Կոստանդին Պորփիւրոգենիտոսէն են։

խօսքին նայելով՝ խաղաղութեան բանակցութեանց համար Հռովմայեցի բանագնացին վաւերական տեղեկութիւնները գործածած է եւ տեղ տեղ բառ առ բառ յառաջ բերած[1]։

Բանակցութեանց այս անգամ Յուստինիանոս սկիզբ ըրաւ[2]։ Յառաջուան պէս ինքնակալներէն միոյն արքունիքը դեսպաններ խաւրուելով չկատարուեցան այս բանակցութիւնները, հապա մասնաւոր յանձնակատարներու ձեռքով, ըստ իմիք՝ սահմանի մօտ չէզոք հողի վրայ, ծանօթ Դարասի շատ մօտիկ[3]։ Հոն գացած էր Հռովմայեցի լիազօրը Պարսից արքային իւր գալն ու վախճանը ծանուցած, որուն վրայ ասիկա ալ իր բանագնացը հոն խաւրեց։

Յուստինիան իրեն փոխանորդ ընտրած էր իւր ամենահաւատարիմ խորհրդականներէն մին՝ պաշտամանց մագիստրոս Պետրոս պատրիկը, զոր ուրիշ տեղ յիշատակած ենք արդէն եւ որ իրաւական ծանօթութիւններու հմուտ եւ հոյակապ ճարտարախօս եւ աջողակ գործիչ մ'ըլլալով շատ անգամ դիւանական գործառնութեանց գործածուած էր[4]։ Խաղաղութեան համար կատարուած բանակցութեանց վրայ մասնաւոր գիրք մը գրած է։ Որոշ չէ թէ այս գիրքը չի-

---

1 Մենանդր Հատկ. 12 (217)։

2 Այս բանս կը հետեւի Խորովի նամակէն յ. տ. 209, որ կայսեր շնորհակալութիւն կը յայտնէ անոր պատրաստակամութեանը համար։

3 Մենանդր Հատկ. 11 (206)։

4 Լիւդոս de magistr. III 25. 26. Իւր գրոց վրայ տ. Krumbacher յ. տ. 237 եւ յջ.։

նած է իբր պաշտօնական տեղեկատուութիւն կայսեր կամ տէրութեան դիւանին համար թէ առանձնական աշխատութիւն։ Այս մատեանն է, զոր Մենանդր, ինչպէս կը յայտարարէ, բառ առ բառ իբր հիմ ծառայեցուցած է իւր նկարագրութեան եւ նոյնին վստահելիութիւնն ու ճշդութիւնը մասնաւոր գովութեամբ յառաջ կը բերէ[1]։ Նոյն իսկ իւր այժմեան, համառօտեալ կերպարանքին մէջ իսկ այս տեղեկատուութիւնը վերջին աստիճանի թանկագին պատմական եւ ազգային իրաւական յիշատակարան մըն է։ Արտաքոյ կարգի կենդանի գոյներով մեր աչաց առջեւ կը պարզէ բանակցութեանց ընթացքը, արձանագրութեանց ու դիւանագիտական յիշատակարանաց մասին բաւականաչափ տեղեկութիւն կու տայ, ժողովոյն վիճաբանութեանց կարծես մասնակից կ՚ըլլանք եւ խաղաղութեան դաշանց վաւերական բովանդակութիւնը մեզի կ՚աւանդէ։ Պարսկաստանի բանագնացը Հռովմայեցւոյն հետ աստիճանի եւ քաղաքագիտական ճարտարութեան կողմանէ լիովին կը մրցէր, թէպէտ երբեմն երեւան եկող արեւելեան պարծենկոտութիւնը աւելի բարակ կրթութիւն ընդունած Յոյնին ծաղրածութիւնը կը շարժէր[2]։ Խոսրով իրեն լիազօր կարգած էր Յազդ Վշնասպը՝ ուրիշ անուամբ Ջիկ, որ նախորդ բանակցութիւններէն ծանօթ է։

---

1 Մենանդր Հտկտ. 12 (217)։

2 Կ՚արժէ կարդալ Պետրոսին՝ Պարսկին տուած յանդիմանութիւնը Մենանդրի քով 210։

Երկու գլխաւոր անձնաւորութեանց իբրեւ չքադիր կ'ընկերանային շրջակայ վայրերէն նշանաւոր մարդիկ եւ օգնական գործիչներու խումբ մը, գլխաւորաբար թարգմաններ։ Պետրոսի հետ Եւսեբիոս մ'ալ կը յիշուի իբր թէ անոր առընթերակիցը (Ad latus), մինչ պարսիկ պատգամաւորին առընթերակիցն էր ազնուական Սուրէն (Σουρήνας) ցեղէն մէկը, որ վիճաբանութեանց մէջ ալ կը մնէր[1]։ Յանձնակատարներուն տրուած լիազօրութիւնը կը կայանար “բանակցելու եւ դաշինք գնելու„ մէջ — λαλῆσαι καὶ τρακταῖσαι —[2]. Մեզի հասած տեղեկութիւններէն չիմացուիր, թէ արդեօք այս ընդհանուր հրահանգներէն զատ մասնաւորներ ալ ունէին անոնք։ Ուրիշ դիպաց վրայէն չափելով՝ ընդունելու ենք, որ բանակցութիւնները չսկսած՝ լիազօրութեան թղթերը ներկայացուած եւ օրինաւորութեան կէտը քննուած ըլլալու են[3]։

Ժողովն սկսաւ բացման ճառերով՝ զոր խօսեցան երկու դեսպաններն ալ, որոնց մէջ ճարտարխօսական դարձուածքներով կը ջանային իրենց ինքնակալներն ու երկիրները գեղեցիկ գոյներով ներկայացընել։ Մենանդրի յառաջ բերած այս ճառախօսութիւնները իրապէս խօսուածի ազդեցութիւն կ'ընեն եւ ոչ թէ ծանօթ դասական օրինակներու վրայէն կաղապարուելով՝ ճառախօսներուն բերանը դրուած են։ Այնուհետեւ

---

1 Մենանդր 211. 212։

2 Խօսրովի նամակէն կը տեսնուի. Մեն. 209։

3 Հմմտ. Մենանդր. Հատ. 55 (257 ։

բուն բանակցութիւններն սկսան, որ շատ դանդաղ կը յառաջանային, վասն զի թարգմաններու ձեռքով կ՚ըլլային, դեսպաններուն մէկուն միւսին լեզուն չգիտնալուն՝ պատճառաւ։

## Ա.

Ամէն բանէ յառաջ ջանացին կնքուելիք խաղաղութեան գլխաւոր պայմաններուն վրայ միաբանիլ, որ է ըսել խաղաղութեան տարածութեան, տեւողութեան, Լազեան խնդրոյն եւ Պարսից պահանջած դրամական փոխարինութեան վրայ։

ա) Թէ խաղաղութիւնը ընդհանուր ըլլալու էր եւ պետութեան բովանդակ երկրամասերուն վրայ, մէջն ըլլալով նաեւ Հայաստան եւ Լազիկա, տարածուելու էր, յայսմ միաբան էին յանձնակատարները[1]։ Հայաստանի մասնաւոր յիշատակութիւնը այս անունը կրող հռովմէական գաւառներուն չէր հայեր, որոնք ի վաղուց պետութեան կցուած էին[2], այլ Պարսկահայաստանի, որ մնացած Իրանի հանդէպ միշտ առանձնական դիրք մը գրաւած էր։

բ) Նմանապէս Լազեան խնդիրը դիւրաւ լուծուեցաւ։ Խոսրով ետ կեցած էր այս երկիրը

---

1 Հաստատուն եւ յուժի իցեն դաշինքն եւ յամենայն ուրեք զօրիցեն և՛ւ յարեւելս եւ յաշխարհին Հայոց, որպէս եւ Լազիկացւոց։ Մենանդր 208։

2 Հմմտ. Novelle 31, որ կը խօսի Հայաստանի չորս նահանգի բաժնուելուն վրայ։ Գիւտերբոք, Հռովմէական Հայաստան։

Հռովմայեցիներէն կորզելու գաղափարէն: Այսպէսով խաղաղութեան պայմանին մէջ առնուեցաւ ամբողջ Լազիկա ի բաց թող տալը, որմէ կը հետեւէր ինքնին նաեւ այն պարտաւորութիւնը, որ Պարսիկները տակաւին իրենց գրաւած վայրերէն ելլելու էին[1]: Սուանեան երկրին նկատմամբ որոշումը ապագայ բանակցութեան մը թողուեցաւ, որովհետեւ չկրցան միաբանիլ:

գ) Խաղաղութեան տեւողութեան գալով՝ Պարսիկները կը պահանջէին, որ նախընթաց 532ի խաղաղութեան պէս մշտատեւ ըլլայ եւ ժամանակամիջոց չորոշուի, իսկ Պետրոս որոշ կարճատեւ ժամանակի կողմն էր: Շահերը հօս հակառակ էին իրարու՝ տարեկան դրամավճարքի հատուցման կողմանէ. Պարսկաստան կ'ուզէր դրամավճարքն ընդունիլ որչափ կարելի է երկայն ատեն, մինչ Հռովմայեցւոց շահաւոր էր կարճ ժամանակամիջոցի մը չափը: Վերջ ի վերջոյ յիսուն տարուան ժամանակամիջոցի վրայ համաձայնեցան[2], որուն թերեւս Թէոդոս Բ. ի Վռամ արքային հետ 422 դրած դաշինքը իբր օրինակ ծառայած ըլլայ:

դ) Դրամի խնդրոյն լուծումը մեծագոյն դժուարութիւն պատճառեց: Յուստինիան եւ իր

[1] Մենանդր 208: Ῥωμαίοις δὲ ἐπιδοθῆναι τὴν Λαζικήν.

[2] Պարսիկք կամէին զի առանց ընդհատութեան կնքեսցին դաշինքն — զնորին հակառակն Հռովմայեցւոց կամք այն էին զի վասն սակաւ ինչ ժամանակի դիցին դաշինքն — ապա ուրեմն միաբանեցին, զի խաղաղութիւնն յաւտկանեալ ձգեսցի յիսուն ամս:

*փոխանորդը քաջ գիտէին թէ խաղաղութիւնը եւ Լազիկայի ի բաց թողուիլը ձրի չի կրնար ըլլալ։ Ուստի Պետրոսի Պարսից դրամական հատուցում պահանջելուն դէմ ի սկզբան անդ ոչը կոխելը դիւանագիտական խաղարշաւ մըն էր, վասն զի լաւ գիտէր թէ ծանրութեամբ մերժելուն պէս դաշինքը օդ կ'ելլէր։ Պարսից նախնական պահանջը՝ թէ* 30*էն մինչեւ* 40 *տարի տարեկան ահագին տուրք մը կանխաւ վճարուի, իբրեւ չափէն անդին՝ մերժուելէն ետքը՝ երկայն բարակ վիճաբանութենէ վերջը, միաբանեցան, Պարսից վճարուելի տարեկան* 30.000 *ոսկւոյ գումարին վրայ τριάκοντα χιλιάδας ἐτεσίας χρυσίου νομίσματος, այնպէս մը, որ*

1. *առաջին եօթը տարիներուն համար* 210.000 *ոսկւոյ ամբողջական գումարը դաշինքը կնքուելուն պէս,*

2. *առաջին եօթը տարիներին անցնելէն վերջը, յաջորդ երեք տարիներու բաժինները կազմող* 90.000 *ոսկին ալ մէկ անգամէն, եւ*

3. *առաջին տասը տարիները լրանալէն վերջը տարուէ տարի որոշուած* 30.000 *ոսկւոյ գումարը վճարուելու է*[1]։

*Որպէս զի* 2*ի մէջ յիշուած երեքամեայ մասնավճարները ապահովուին, կայսրը պար-*

---

[1] *Մենանդր անդ* 208. *Զի Հռովմայեցիք ի տասնամեան ժամանակի մատուցեն զչափ ոսկւոյն վաղվաղակի վասն եօթանց ամացն եւ յետ եօթն ամաց ի վերայ անցանելոյ, առանց յապաղութեան զսակն մնացելոյ երից ամացն եւ ապա ուրեմն ըստ անցանել իւրաքանչիւրոյ ամին հայթայթեսցեն Պարսից տարեկանսն որ սահմանեալքն են։*

տաւորման հանդիսական արձանագիր մը հանելու եւ զայն Պարսից Թագաւորին յանձնելու էր, որուն փոխարէն ասիկա ալ ինքզինքը կը պարտաւորէր գրաւոր, վճարումն ստանալէն վերջը պարտամուրհակը ժամանակին կայսեր դարձընելու[1]։

Ապագային համար ամէն տարակոյս բառնալու համար յայտնապէս սահմանուեցաւ, որ ինչպէս եւ երբէն սկսեալ դաշանց տարիները թէ՛ խաղաղութեան տեւողութեան եւ թէ տարիներու վճարմանց կողմանէ հաշուուելու էին։ Հռովմէական եւ պարսկական տումարներու տարբերութեան պատճառաւ անհնարին էր մէկուն կամ միւսին նկատողութեան առնուիլը, ինչպէս նաեւ երկու իշխողներուն կառավարութեան տարիները իբր կանոն չէին կրնար ըլլալ, ուստի միաբանեցան, որ տարիները κατὰ τὸ ἀρχαῖον ἔθος եւ այն ալ 365 ական օր հաշուուելու էին։ Որ կը նշանակէ, թէ ուրիշ անգամ եղածին պէս այս անգամ ալ դաշանց կնքուելուն ժամանակակէտը հաշուոյն սկիզբ առնուեցաւ. վասն զի այս է բնականը եւ սովորականը[2]։

Պարսկաստանի վճարուելի գումարները յառաջուան դաշնագրութեանց մէջ (532ի,

[1] Մենանդր 209. Զի արքայն Հռոմոց առաքեսցէ գիր հաստատութեան վասն միաբանեալ ոսկին երից ամացն։ — Սահմանեալն էր զի եւ արքայ Պարսից տացէ գիր հաստատութեան, զի յորժամ հայթայթեսցի Պարսից ոսկին պարտուց վասն երից ամացն, յայնժամ Թագաւորն Հռոմոց յետս դարձուսցէ զգիրն հաստատութեան։

[2] Մենանդր. 213։

545ի, 551ի) ոսկւոյ լիտրի վրայ եւ այն այնպէս մը պայմանաւորուած էին, որ իւրաքանչիւր ամավճար 400 լիտր ոսկւոյ կու գար։ Ընդհակառակն այժմեան դաշնագրութեան մէջ տարեկան բաժինը 30.000 ոսկեդրամ սահմանուած էր։ Հռովմէական արժողութեան համար ոսկւոյ լիտրը օրինական հաշուի եւ կշռոյ միութիւնն էր, իսկ ընթացիկ ոսկեդրամն էր Solidusը (aureus, νόμισμα), որ Կոստանդնի դրամական նորոգութենէն ի վեր ոսկւոյ լիտրին իբր եօթանասունուերկրորդ մասը կը դրոշմուէր։ Բայց բուն կշիռն էր էականը, եթէ գումարը Solidusի վրայ ալ ըլլար, որովհետեւ վճարումները թէ՛ հասարակական վճարմանց եւ թէ առանձնական տուրեւառի մէջ ոսկւոյ պահանջուած քանակութեան կշռուելովը տեղի կ'ունենար[1]։ Solidusով եւ ոսկւոյ լիտրով հաշուելու երկու եղանակներն ալ վեցերորդ դարուն կային 1:72ի հաստատուն յարաբերութեամբ իրարու համարժէք։ Յուստինիանու օրէնքներէն բազմաթիւ օրինակներ ցոյց կու տան, որ ըստ կանոնի մեծագոյն գումարները սովորաբար ոսկւոյ լիտրով կը հաշուուէին, ընդհակառակն փոքրները Solidusներու վրայ[2]։ Սակայն եւ այնպէս առանց բացառութեան չէր առաջինը, վասն զի մինչեւ 400, 500 եւ աւելի

---

[1] Մարկուարդի Röm. Staatsverwalt. 2, 30. Cod. Theod. 12. 6. 2. Cod. Just. 11. 10. 8.

[2] Nov. Just. 30 c. 6, Nov. 128 c. 9, Nov. 8, Nov. 1, Nov. 80 c. 8 եւայլն։

Solidusով հաշուած գումարներու կը հանդիպինք[1]։

Ընդունինք, որ խաղաղութեան դաշանց մէջ 30.000 ոսկի ըսելով Solidus կը հասկըցուի, այն ատեն ասոր համապատասխան գումարն է 416²/₃ լիտր ոսկւոյ կշռոյ արժողութիւնը, հետեւութիւն մը՝ որ շատ գոհացուցիչ չ'երեւար, վասն զի մէկ կողմանէ չի համաձայնիր ամավճարներուն սովորական քանակութեան, միւս կողմանէ աչքի կը զարնէ, որ մատենագրողները գիտնալով հանդերձ Solidusի ոսկւոյ լիտրին հետ յարաբերութիւնը, ընդհանուր գումար մը այնպիսի եղանակաւ որոշած են, որ կշիռը ամբողջական չափ չցուցնէ, այլ կոտորակ տայ։ Բայց ունինք քանի մը բիւզանդական աղբիւրներու վկայութիւններ, որ Պարսկաստանի վճարելի տարեկան գումարը ոչ թէ 30.000 ոսկի, այլ հինգհարիւր լիտր ոսկի կը ներկայացընեն. այսպէս նախ եւ յառաջ Մենանդրի ժամանակակից մը՝ Յովհաննէս Եպիփան[2], դարձեալ ասոր վրայ յեցած Թէոփիլակտոս Սիմոկատտէսի[3] պատմագրութիւնը եւ վերջապէս — թէպէտ քիչ մը յետագոյն ժամանակէ — Թէոփանէսի ժամանակագրութիւնը[4]։ Այսպէսով աւելի հաւանականութիւն

---

1 Nov. 26 c, 5. Nov. 28 c. 3 եւն։

2 Յովհ. Եպիփ. (ՀՅՊ 4. 274)։

3 Թէոփիլ. 3. 9 (129). — ἀνὰ ἔτος ἕκαστον πεντακοσίας λίτρας χρυσίου եւն։

4 Թէոփանէս 245։

կը ստանայ թէ նաեւ Մենանդր τριάκοντα χιλιάδες χρυσίου νομίσματος ըսելով ըստ ինքեան բացայայտել կ'ուզէ λίτραι χρυσίου πεντακοσίαι հաւասարաչափ կշիռը։ Որով անկարելի է, թէ ասով սովորական Solidusը ըսել ուզուած ըլլայ, որուն 30.000ը 500 լիտր պիտի տար, մանաւանդ թէ — քանի որ Մենանդրի սխալումը կարելի չէ ենթադրել[1] — ոսկեդրամի վրայ է հոս խնդիրը, որուն կշիռը ոչ թէ 1/72, այլ 1/60 լիտր էր։ Ծանօթ է արդ՝ որ Դիոկղետիանոս aureusը դրոշմել տուաւ 1/60 լիտրի եւ այս իբր օրինական դրամ կը բանէր մինչեւ Կոստանդնի ձեռքով գնոյն իջեցուիլը։ Թէ ինչու այժմու բանակցութեանց մէջ ոսկեդրամի հաշիւ եղած է, միայն ենթադրութեամբ կրնայ մեկնուիլ։ Արդեօք Յուստինիանու ժամանակ տակաւին այսպիսի ոսկեդրամներու մեծաքանակ բազմութիւն մը Պարսկաստանի սահմանակից երկիրներու մէջ ի գործածութեա՞ն էր։ Գուցէ Պարսիկները, որոնց քով շատ մը հռովմէական դրամներ ալ կը բանէին[2] իրենց ստակներուն հետ, ծանր aureusը աւելի՞ կը սիրէին քան թէ թեթեւ solidusը։ Թերեւս մէկ պատճառն ալ ըլլար Յուստինիանու կառավարութեան վերջերը տեղի ունեցած դրամական զեղծումները[3]։ Ինչպէս կ'ուզէ ըլլայ, ծանր դրամով հատուցման

[1] Մենանդր. ուրիշ տեղեր ալ Հմ՛. 39. 40 (241) 30.000 թիւը որոշ կը յիշէ։

[2] Spiegel, Eran. Altert. 3, 662.

[3] Պրոկոպ. Anecd. 25 (140)։

պայմանաւորումը կ'երեւայ թէ Պարսից ուզելովը տեղի ունեցած է։ Այս անգամ ալ վերջ ի վերջոյ որոշիչ եղաւ կշիռը, եւ ըստ Մենանդրի[1] արդէն իսկ առաջին 10 տարւան վճարումը կշռով եղաւ։ Դարձեալ Մենանդրի եւ անշուշտ նաեւ խաղաղութեան դաշանց մէջ գործածուած բացատրութիւնը՝ 30.000 νομίσματος (եւ ոչ νομίσματα) գումարին ըստ իմիք իբր հաշուի միութիւն համարուած ըլլալուն երաշխաւոր է։ Ահա այս ըսուածները քովէ քով բերելով՝ չենք կարծեր թէ յանդգնական ըլլայ, որ իրականին խաղաղութեան դաշանց մէջ 60 ոսկի մէկ լիտրի եկած ըլլայ։ Բիւզանդական դրամի վերաբերեալ նիւթերով զբաղողներուն կը թողունք հոս առաջարկուած խնդիրները ճշդագոյն քննելն ու որոշելը։

Բ.

Խաղաղութեան գլխաւոր պայմաններուն վրայ միաբանելէն վերջը՝ միւս բանակցութիւնները զանազան մասնակի կէտերու վրայ սկսան դառնալ, որոնցմէ մաս մը դաշանց գործադրութեան մաս մ'ալ երկու պետութեանց մէջ տիրող անհամաձայնութեանց բարձուելուն կը հայէին եւ բարեկամական յարաբերութիւնը նորոգելու ծառայութիւն մը կրնային մատուցանել։ Մենանդր մէն մի դաշնադրական որոշումները 13

---

[1] Մենանդր. 214։

(Ճշգագոյնս 14)[1] շարունակեալ Թուերու Ներքեւ յառաջ կը բերէ եւ այն ալ Պետրոսի Նախնական տեղեկատուութեան եւ դաշանց բնագրին համաձայն, ինչպէս որ յայտնի կը հետեւի մեծագոյն մասին սկիզբը գործած ὡσ կամ ὥστε բառերէն։ Զարմանալին այն է, որ Թիւ 13ի մէջ խաղաղութեան յիսուն տարի տեւելուն յիշատակութիւնը կ'ըլլայ, մինչ չի յիշուիր Լազիկայի ի բաց Թողուիլը եւ վճարուելի դրամական հատուցումը։ Կարելի չէ ենԹադրել Թէ դաշանց արձանագրութեան մէջ այս երկու ամենածանրակշիռ պայմանները զանց առնուած ըլլան, ինչպէս նաեւ անհնարին է ընդունիլ, որ ասոնց համար մասնաւոր արձանագրութիւն մը յօրինուած ըլլայ։ Ուստի ապահովապէս այն երկու պայմանները խաղաղուԹեան դաշանց մէջ չէին պակսեր եւ անշուշտ իբրեւ էական կէտեր առանց մասնաւոր Թուարկութեան սկիզբը դրուած ըլլալու էին, եւ Մենանդր մէկալ Թուերն յառաջ բերած ատեն պէտք չունէր զանոնք դարձեալ յիշատակելու, ինչու որ ուրիշ տեղ անոնց վրայ ընդարձակ խօսած էր։ Յաջորդով Մենանդրի պահած կարգէն անկախ, բայց ինչ ինչ հասարակաց տեսակէտներու համեմատ՝ պիտի խօսինք դաշանց պայմաններու վրայ։

---

[1] Այսինքն այս յաւելուածը ἰσχυσαῖ δὲ καὶ τοῦτο κ. τ. λ. Մենանդր. 213, 14 է։

## Ը. Թէ խաղաղութիւնը ո՛ր երկիրներուն վրայ կը տարածուէր:

Աշխարհեան խաղաղութիւնը տարածուելու էր ոչ միայն երկու պետութեանց բովանդակ սահմաններուն վրայ. այլ նաեւ այլեւայլ ազգութեանց նոյներուն սահմաններէն անդին եւս անցնելու էր. Ըստ այսմ

1. Դաշանց Թ. 9ին համաձայն խաղաղութեան մէջ առնուած էին երկակողմանի պաշտպանեալ տէրութիւններն ու երկիրները, որով ասոնք եւս պաշտպանուելու էին հարստահարութեանց եւ թշնամական յարձակմանց դէմ[1]։ Այս որոշումը Արեւմտեան Հռովմէական պետութեան համար այնչափ նշանակութիւն չունէր, ինչպէս Պարսկաստանի, վասն զի առաջ շահին նպաստաւոր էր արգելուլ, որ իրեն կախում ունեցող Վրաստանը կամ Աղուանքը Հռովմէական յարձակմանէ զերծ մնան։

2. Ուրիշ որոշում մը (Թիւ 2) կը հայէր երկու պետութեանց հետ դաշնաւոր Արաբացւոց։ Ընդարձակածաւալ եւ կրնանք ըսել անտէրունչ անապատին մէջ, որ Ասորիքի արեւելեան եւ Հարաւային արեւելեան կողմէն մինչեւ Սասանեան պետութեան սահմանը կը տարածուէր,

---

[1] Մի յարձակեսցին կամ պատերազմաւ գումարեսցին ի վերայ ազգի կամ աշխարհի, որ ընդ ձեռամբ յերկոցունց պետութեանց իցէ, այլ մնասցեն առանց ամենեւին ձեռնարկելոյ զինուց եւ զիրեարս պատերազմելոյ, ի նմին կայցեն, մինչեւ եւ նոքա վայելեսցեն ի խաղաղութեան։

կը թափառէին բազմաթիւ արաբ ցեղեր ու վաչկատուն խումբեր (Σαρακηνοί)[1], որոնք մա-սամբ իրարու մէջ ունեցած կագ ու կռուին՝ մասամբ ալ իրենց անընդհատ աւազակական արշաւանքներովը դրացի երկիրներուն բնակչաց համար անտանելի դարձած էին։ Պարսկաստան՝ Եփրատի գծով պաշտպանուած ըլլալով շատ չէր կրեր, ինչպէս հռովմէական գաւառները, որ բոլորովին բաց ըլլալով՝ անոնց յարձակմանց շատ աւելի ենթակայ էին[2]։ Ցընթացս ժամանակաց արաբական ցեղերուն մէկ մասը կէս մը հաստա-տուն բնակավայր հաստատած եւ իր տեղացի ցեղապետներուն ներքեւ պետական յօրինուա-ծութեան թոյլ կապերով կապուած էր։ Այս-պէս վարի Եփրատի աջ եզերքին մօտ բնակող Լախմիդեանք՝ Հիրայի մէջ իշխանութիւն մը հաստատած էին եւ իբր պարսիկ պետութեան աւատ՝ արքայից արքային զօրք տալու էին անոր արշաւանաց ատեն։ Վերջին հռովմէական-պարս-կական պատերազմին՝ Հիրայի շէյխը Ալ-Մուն-տիր (Ἀλαμούνδαρος) Խոսրովին աջ բազուկն եւ Հռովմայեցւոց վտանգաւոր ախոյեանն հանդի-սացաւ[3]։

---

1 Σκηνῖται Ἄραβες կը կոչէ զանոնք Թէոփա-նէս, 141։

2 Բազմաթիւ յարձակումներ կը յիշէ Թէոփանէս, 120. 141 եւն. Պրոկ. ՊՊ. Ա. 18 (89), Բ. 1 (154)։

3 Հիրայի վրայ ընդարձակ կը խօսի Տաբարի (Նէօլ-դեկէ) 46 յջ. 78—85. 137. 150. 165—172 եւ ուրիշ տե-ղեր. Մունտիրի վրայ Պրոկոպ. ՊՊ. Ա. 18 (88 յջ.), Բ. 1 (154), Բ. 10 (197)։ Մեռաւ իբր 554։

Ինչպէս որ Հիրայի մէջ պարսիկ՝ այսպէս ալ երրորդ Պաղեստինի եւ Արաբիայի[1] սահմանին վրայ հռովմէական-արաբացի աւատական տէրութիւն մը հաստատուած էր, որուն գլուխ կանգնած էին Ղասանեանց տնէն իշխողներ։ Յուստինիանոսի առջեւ մասնաւոր շնորհ կը վայելէր Հարիս շէյխը, Գաբալայի ('Αρέδας) որդին. զինքը իւր բնիկ երկրին մէջ իբր ցեղապետ գրեթէ անկախ թող տուաւ, մինչեւ անգամ թագաւորական տիտղոս ալ շնորհեց։ Ասոր դիմաց անիկա ալ պարտք ունէր սահմանները անապատի եւ պարսիկ Արաբներուն դէմ պաշտպանել եւ պատերազմի ժամանակ իւր հեծելագունդերը կայսեր տրամադրութեան տակ դնել[2]։

Յաճախ այս աւատները իրենց վերին տեարց համար անհաճոյ պատահարներու առիթ կու տային։ Նոյն իսկ երկու մեծ պետութեանց մէջ խաղաղութիւն կամ գոնէ զինադադար եղած ատեն՝ բանի տեղ չդնելով՝ իրենց կազ ու կռիւը կը շարունակէին կամ նոյն իսկ ինքնագլուխ կերպով հակառակորդին երկիրը կը յարձակէին։ Իրենց հեստութիւնը պատճառ կ'ըլլար փոփոխ ամբաստանութեանց եւ դիւանական կնճիռներ կը յարուցանէր, միանգամայն մշտա-

---

1 Ասոնք նախնաբար երկու տարբեր գաւառներ էին, ինչպէս Յուստինիանու 8 Օրին. եւ երկու գաւառներուն համար հանած կարգաւորութեան հրովարտակէն (Օրին. 102 եւ 103) կը տեսնուի։

2 'Αρέδας τὸν Γαβαλᾶ παῖδαι վրայ տես Պրոկ ՊՊ. Ա. 18 (89) եւ այլուր։ Ցաբարի (Նէօլդեկէ) 170. 171։

կայ վտանգ մըն էր երկու պետութեանց լաւ-յարաբերութեանց տեւելուն դէմ[1]։

Երկու մեծ պետութեանց դրած խաղաղութեան դաշինքները սկզբամբ նաեւ այս դաշնաւորաց համար կ'արժէին, եթէ նոյն իսկ կերպապէս դաշանց մէջ առնուած չըլլային անոնք։ Այս բանս այժմ նաեւ Դարասի բանակցութեանց մէջ ալ հաստատուեցաւ։ Թիւ 2 կը սահմանէր, որ խաղաղութեան պայմանները դաշնաւոր Արաբներու համար ալ արժէին, որով իրարու կամ մէկալ մեծ պետութեան դէմ խաղաղութիւնը խանգարող ամէն ձեռնձգութենէ ետ կենալու էին[2]։ Այս պարտուց կատարման հոգը կ'իյնար երկու ինքնակալներուն, որոնք ըստ իմիք իրենց աւատներուն տեղ իրարու հետ անոնց համա՛ր դաշինքը դրած էին, ուստի առանց որոշակի սահմանուած ըլլալու ալ յանձն առած էին իրենցմէ կախուած դաշնաւորներուն լաւ յարաբերութեանց քաղաքական եւ ազգաց իրաւանց կողմանէ պատասխանատու ըլլալ, պարտաւորութիւն մը, որ շատ մը դժուարութիւններով կապուած էր, ինչպէս հետեւութիւնը ցուցուց։

---

[1] Պրոկոպիոս ՊՊ. Բ. 1 (154), Բ. 28 (287), Գ. Պ. Դ. 11 (507)։

[2] Մենանդր 212. Զի եւ Սարակինոսք՝ դաշնաւորք կացցեն երկոցունց պետութեանց եւ հաստատուն գործիցեն, եւ մի տացեն պատերազմ, որ ի Հռովմայեցւոց կուսէ իցեն ընդ Պարս եւ մի ընդ Հռովմայեցիս, որ ի Պարսից թերէն են

Բ. Դաշանց շատ մը մասնական պայմաններ կը վերաբերին երկակողմանի սահմաններուն պաշտպանութեան:

1. Լազիկէ ետ տրուելէն վերջն ալ Կովկասեան անցքերուն պահպանութիւնը եւ պաշտպանութիւնը Պարսից մնաց եւ Հռոմ՝ ծախքին համար բան մը պարտական չէր վճարել. պայմանաւորեալ դրամական հատուցման մէջ էր նաեւ այս ծախքը։ Ըստ այսմ Պարսկաստան վրան կ'առնուր պայմաններուն թիւ 1ին մէջ, Հռոմէական հողը Հոնաց, Ալանաց եւ այլ բարբարոս ազգաց դէմ պաշտպանելու պարտաւորութիւնը, որուն փոխարէն Հռոմայեցիք ալ կը խոստանային ոչ Լազիկայէն եւ ոչ ուրիշ տեղէ պարսկական սահման զօրք քալեցընել[1]։

2. Նոյնպէս 441ի (տես վերը էջ 57) դաշանց հակառակող Դարասի ամրացուելուն վրայ ալ խօսելու առիթ եղաւ։ Յուստինիան պատերազմի միջոցին Դարասը մեծապէս ամրացուցած եւ զայն, ինչպէս Պրոկոպ կ'ըսէ, բովանդակ պետութեան համար մարտկոց մը դարձուցած էր[2], ուր, գոնէ առ ժամանակ մը, փոխած էր նաեւ Արեւելքի բանակին մագիստրո-

---

[1] Մենանդր 212. Զի ընդ կիրճս անցիցն, որ կոչէրն Խորուցոն եւ ընդ Կասպեան կապանս մի թողուլ տալ Պարսից կամ Հոնաց կամ Ալանաց եւն։ Խորուցոն կիրճին դիրքը անորոշ է. Թերեւս Պրոկ.ի Գ. Պ. Դ. 3 (469) յիշած Τζοῦρին հետ նոյն ըլլայ (°)։

[2] Պրոկ. վասն շին. Բ. 1 (211). πάσης μὲν προβεβλημένη τῆς Ῥωμαίων ἀρχῆς.

սին Նիսոը։ Որովհետեւ պատերազմին պատճառաւ 441ի եւ 552ի խաղաղութեան դաշինքներն իրենց ազգային իրաւական արժէքը կորսընցուցած էին, Յուստինիանոս մասնաւոր մտադրութիւն դարձուց հռովմէական սահմաններն արեւելքի մէջ կարգաւորեալ պաշտպանելու. առ այս ստեղծեց պաշտպանութեան ընդարձակածաւալ եւ ճիւղաւորեալ յօրինուածութիւն մը, որ կը կայանար փոխադարձ իրարու նպաստաւորող ամուր վայրերէ եւ ամրոցներէ (φρούρια), որով կրնար սահմանի վրայ գաւառները, Հայաստան, Միջագետք, Եփրատեսիա եւ Ուռհայաստան (Ոսրոենէ) պարսկական յարձակումներէ առաւել եւս զերծ պահել[1]։ Այս խաղաղութեան բանակցութեանց միջոցին առիթ ունեցան սահմաններն ամրացընելու խնդիրը դարձեալ ծեծելու եւ նոր, յառաջուան դաշնադրութեանց նմանագոյն որոշումներով կարգաւորելու։ Դարասի նկատմամբ Պարսկաստանը յայտնապէս թողուց իւր ընդդիմադրութիւնը եւ նոյնիսկ քանդման պահանջը (Թիւ 8)[2], մինչ Հռովմայեցին խօսք տուաւ զայն լոկ պահպանութեան կարեւոր գունդով մը պահել եւ վերին հրամանատարութիւնը անկէ փոխադրել։ Այ-

---

1 Պրոկ. վասն շին. Բ. եւ Գ.։ Դարասէն զատ նկատի կ'առնուին Թէոդոսուպոլիս եւ Մարտիրոպոլիս քաղաք՝ Հայաստանի, Ամիդ՝ Միջագետքի եւ Կիրկեսիոն Ուռհայաստանի մէջ։ Ասոնց ետեւը հեռուն այնպիսի վայրեր կային, որ պաշտպանութեան երկրորդ գիծ մը կը կազմէին։

2 Մենանդր անդ. ὥς τε—μὴ ἐγκαλεῖν Πέρσας Ρωμαίους τοῦ ἐπικτίζεσθαι τὸ Δάρας.

նուհետեւ Դարասէն գործուած ամէն յարձակման ժամանակ բերդին հրամանատարը գործուած ամէն վնասուց անձամբ պատասխանատու էր (Թիւ 10)[1]։ Մէկալ ամուրններուն նկատմամբ շինուածքներու քանդման խնդիր չեղաւ, բայց երկու կողմերն ալ իրենք զիրենք պարտաւորեցին, այնուհետեւ սահմանի վրայ նոր ամրութիւններ հաստատելէ ետ կենալ. դաշանց այս պայմանին հակառակ գործողութիւնը ինքնին իսկ, խաղաղութեան եղծում նկատելի էր (պայմաններուն Թիւ 8)[2]։ Այս ուրեմն յէականս 441ի դաշանց դարձած էին վերստին։

### Գ. Առևտուր և հաղորդակցություն:

Արեւելեան հռովմէական պետութեան եւ Պարսկաստանի մէջ նոյն ժամանակուան յարաբերութեանց վիճակը հասկընալու համար, պէտք է միտ դնել, որ դրացի տէրութեանց միջեւ ազատ յարաբերութիւնը նոյն ատենուան ոչ քաղաքական եւ ոչ ալ տնտեսական հայեցողութեան կը համապատասխանէր։ Հռովմայ

---

1 Մի նստցի ի Դարաս աւելագոյն գունդ զօրաց քան զայն, որ բաւական իցէ ի պահպանութիւն քաղաքին. եւ մի կացուսցեն անդ զհրամանատարն արեւելից եւ մի լիցին յարձակմունք անտի կամ վնաս Պարսից. ապա թէ դէպ լիցի այսպիսի ինչ, յանցանքն յառաջնորդ անդր Դարասայ կրթին։ Στρατηγός, երբեմն նաեւ στρατηλάτης, նոյն ժամանակուան լեզուի գործածութեան մէջ Magister militum ըսուածն է, ἄρχων ստորակարգ զինուորական կամ պաշտօնեայ մը. Praefectus կամ Dux.

2 Մենանդր անդ։

հրապարակական իրաւանց համեմատ սահմանը անանցանելի կերպով փակուած ըլլալու էր արտաքին աշխարհաց առջեւ եւ խստապահանջ սահմանի ոստիկանութիւնը կը հսկէր, որ չըլլայ թէ օտարներն ըստ կամի Դանուբէն կամ Եփրատէն անցնին եւ մտնեն կայսերական սահմանները[1]: Նոյն եւ նման սկզբունքներ անշուշտ Պարսկաստան ալ կ'ընդունէին: Նորագոյն գաղափարով երթեւեկութեան յարաբերութիւն չկար. սահմանն անցնող օտարականին արտաքոյ կարգի անվստահութիւն ցոյց կը տրուէր, կը վախնային որ թշնամի տէրութեան մը լրտեսն ըլլայ, որ իր նիստ ու կացը կրնայ չարաչար գործածել դրացի երկրին յարաբերութիւնները լրտեսելով ի վնաս նոյն տէրութեան[2]: Միայն յայտնի եւ որոշ յատկութեամբ կամ իբր պատգամաւոր երեւցողը կրնար մուտք եւ յառաջխաղացութիւն յուսալ եւ այս այն ատեն միայն, երբ իր առաքումը դրացի տէրութեան հաճոյ էր, եւ հասարակօրէն՝ կապուած կ'ըլլար իր ճամբորդութեան ընթացքը[3]: Ներս կամ դուրս գաղթել սկզբունքով արգելուած էր. շատ շատ կրնար ըլլալ, որ փախստականներ կամ հալածականներ գաղտ կամ տէրութեան չտեսնելու զարնելովը սահմանէն կը սողոսկէին եւ անստոյգ ընդունելութիւն մը կը գտնէին: Այսպիսի յարաբերութիւններու պատ-

---

1 Cod. Theod. Գ. 16. 2:
2 Պրոկ. ՊՊ. Ա. 21 (108):
3 Cod. Iust. 4. 63. 4.

ճառաւ էր, որ երկու ազգաց առեւտուրը խեղճ կը մնար։

Առեւտրոյ մեծ պողոտան, որ Ասիայի ներսերէն, Չինաստանի եւ Հնդկաստանի արտադրութիւններն ու գանձերը, գլխաւորաբար կոշտ մետաքս, համեմանք, գեղօրայք եւ պատուական քարեր, Արեւմուտք կը փոխադրէր, Պարսկաստանէն կ՚անցնէր[1]։ Պարսիկ վաճառականները հռովմէական պետութեան հետ միայն եւ միայն միջնաշխարհեայ առուտուրը կ՚ընէին. իրենց կարաւաններով պարսիկ-հռովմէական սահմանը կ՚երթային, ուր ստիպուած էին դադար առնուլ, ինչու որ միայն հոս առուտուր եւ փոխանակութիւն տեղի կ՚ունենար Արեւմուտքէն եկող հռովմայեցի, յոյն եւ ասորի վաճառականաց հետ, որոնք փոխադարձաբար Պարսից կը յանձնէին այն վաճառքները, զորոնք անոնք իրենց վերադարձին հետերնին կը տանէին իրենց երկիրը։ Երկու մեծ պետութիւններու մէջ եւ անոնցմէ դուրս ներմուծութիւնն եւ արտածութիւնը լոկ սահմանի վրայ կը կատարուէր։ Ներեալ չէր Պարսկի մը իւր ապրանքը Կոստանդնուպոլիս բերել, որ մնացեալ Արեւմտից գլխաւոր մթերանոցն էր եւ ոչ յոյն վաճառականի մը Տիզբոն երթալ կ՚ըլլար։ Նմանապէս պարսկական ձեռքերու մէջ էր ծովու վրայէն

---

1 Տես վաճառաց ցուցակը Dig. ի մէջ, 39. 4 de public. et vectig. 16 § 7. Բիւզանդացւոց առեւտուրին վրայ տ. W. Heyd, Geschichte des Levanthandels im Mittelalter 1879. Ch. Diehl, Justinien, 233 ff.

*եղած առուտուրը հարաւային Հնդկաստանէն եւ Սէյլանէն, եթէ ճամբան կարմիր ծովէն եւ Եգիպտոսի վրայէն չէր ընթանար· Յուստինիանոս ջանքն ու ճիգը Եմէնի հեմեարներու եւ Աքսումի եթովպական տէրութեան հետ դիւանական յարաբերութիւններ մշակելու, զուտ քաղաքական վախճաններու հետ կը ձգտէր Պարսից ձեռքէն գոնէ մասամբ կորզել տուրեւառը*[1]։

*Իսկ սահմաններու վրայ լոկ որոշ տուրեւառիկ փոփոխութեան եւ մթերանոցի վայրեր կային, որոնց վրայ հռովմէական-պարսկական առուտուրը տեղի կ'ունենար։ Հոս եւ միայն այս վայրերու վրայ որոշեալ ժամանակին մեծ առուտուրներն ու տօնավաճառները կ'ըլլային եւ այն ալ միշտ տէրութեան հսկողութեան տակ։ Մասնաւոր հռովմայեցի պաշտօնեաներ* (comites commerciorum) *տուրեւառիկ փոփոխմանց վայրերը ներկայ կ'ըլլային եւ տեղացի ու օտար վաճառականներուն գործառնութեանց վրայ կը հսկէին*[2]։ *Հոգ ու փոյթ կը տանէին որ ինչ ինչ վաճառաց համար արտածութեան օրինական արգելքը ոտքի տակ չառնուի*[3] *եւ կը գործակցէին նոյնպէս վաճառաց վրայ մաքս առնելու եւ դեմոսին (արքունի գանձապետութիւն) համար գանձելու ներմուծման եւ արտածութեան մաքսը*։

---

1 Պրոկ. ՊՊ. Ա. 19 (98 յջ.)։

2 Cod. Iust. 4. 63. 6.

3 Արգելուած էր արտածութիւնը զէնքի, իւղի, ոսկւոյ եւն. Cod. Just. 4. 41. Cod. Just. 4. 63. 2.

Ցերութեան մենավաճառութիւնն ըլլալով կոշտ մետաքսը՝ իրենք միայն կը գնէին զայն եւ մետաքսի գործարանները (gynaecea) կը բանեցընէին[1]։

Սահմանի վրայ կատարուած այս տուրեւառի վայրերը շատ չէին։ Երբ Ներսեհ Պարսից թագաւորը Դիոկղետիանոսէն յաղթուեցաւ, 297 դրուած խաղաղութեան դաշանց մէջ Պարսից առջեւ բացուած տուրեւառի վայր նշանակուեցաւ Միգդոնիա գաւառին գլխաւոր քաղաքը Մծբին, որ նոյն ատեն հռովմայեցւոց ձեռքն էր,[2] որմէ կը հետեւցընենք թէ այլուր Պարսից դէմ կատարեալ սահմանափակ դրութիւն մը կը տիրէր։ Իսկ թէ Յովիանու 363 ըրած խաղաղութեան ժամանակ, յորում Մծբինը Պարսից անցաւ, ինչ կերպ բանեցուեցաւ, մեզի ծանօթ չէ։ Հետագայ ժամանակներուն համար աւելի տեղեկութիւն կու տան մեզի Ոնորիոս եւ Թէոդոս Բ. կայսերաց 408 կամ 409 — L. 4. h. t. — կարգադրութիւն մը, որ Յուստինիանեան Օրինագրոց 4. 63 հատածին մէջ առնուած է։ Յենլով Պարսից հետ դրուած դաշինքի մը վրայ միայն երեք վայր ազատ կը հրատարակուին, ուր կրնան հռովմէական-պարսկական առուտուրի հաղորդակցութիւն եւ փոփոխութիւն

---

1 Cod. Just. 4. 40. 2։

2 Պետրոս Պատրիկ. Հատ. 14 (189). — εἶναι δὲ τόπον τῶν συναλλαγμάτων Νίσιβιν τὴν πόλιν παρακειμένην τῷ Τίγριδι. Զուր այս եղածին դէմ բողոք բարձաւ Ներսեհ։

տեղի ունենալ, այսինքն Եփրատի վրայ գտնուող Հռովմէական Կողմնիկոնը[1], պարսիկ Մծբինը եւ Պարսից վերին իշխանութեան տակ եղող Հայ Արտաշատը[2], իսկ ուրիշ տեղեր մտնել վաճառականութիւն ընելու վախճանաւ, խստիւ կ'արգելուի: Շարժառիթ յայտնապէս յառաջ կը բերուի լրտեսութեան դէմ զգուշութիւնը: Թէ Հռովմէական եւ թէ պարսկական հպատակներուն ծանր ծանր պատիժներ — վաճառաց գրաւում, դրամի կորուստ եւ տեւական աքսոր — կը սպառնացուին եւ դրամական տուգանք կը սահմանուի նաեւ սահմանի պաշտօնէից աչք գոցելուն վրայ: Մտադրութեան արժանին այն է, որ կարգաւորութիւնը միայն Հռովմէական հպատակաց համար չէ, այլ նաեւ պարսիկ՝ եւ այս վերջիններն ալ, եթէ պետութեան մէջ արգելեալ եղանակաւ վաճառականութիւն ըրած տեղն բռնուին, սպառնացուած պատիժներու կ'ենթարկուին[3]: Կարգաւորութեան մէջ յիշատակուած foedusը անշուշտ 387ին Թէոդոս Ա.ոյ Շապուհ Գ.ի հետ դրած խաղաղութեան դաշինքն է, յորում Հայաստանը բաժնելու յայտնի միաբանութենէն զատ առեւտրական որոշումներ ալ բովանդակուած ըլլալու են, որոնք առիթ տուած են կայսերական այս կարգաւորութեան հրատարակման: Ապա թէ ոչ բնաւ ամենադոյզն ակնարկութիւն իսկ չկայ Պարսկաս-

1 Պրոկ. de aed. II. 8 (230. 234):
2 Հայաստանի հին մայրաքաղաքը:
3 Cod. Just. 4. 63. 4.

տանի հետ 408/9էն յառաջ գրուած գաշինքի մը վրայ եւ նոյնին մերձաւոր խաղաղութիւնը 422ին տեղի ունեցած է,

Թէոդոսեան օրինագրոց մէջ այս կարգաւորութեան մուտ չգտնելուն պատճառն այն է, որ այս կարգաւորութիւնը կը հրատարակուի իբր գործադրութիւն ազգային իրաւական միաբանութեան մը եւ հետեւաբար ինչպէս այս միաբանութիւնը նոյնպէս ալ կարգաւորութիւնը օրինաց մեծ ժողովածոյքին չէին վերաբերեր։ Իսկ Յուստինեան մասնաւոր պատճառ ունէր իւր օրինագրոց մէջ մուծանելու կարգաւորութիւնը։ Ճիշդ քիչ մը յառաջ էր, որ 532ին Խոսրովին հետ մշտնջենաւոր խաղաղութիւն անուանուածը ըրած էր (տես վերը էջ 56)։ Այս հաշտութեան մէջ առեւտրոյ վերաբերեալ որոշումներ չըլլալով, յինքեան կ'իմացուէր որ ցայժմ արժող թէ ազգային իրաւական եւ թէ ազգային հնագոյն կարգադրութիւնները տակաւին կը պահեն իրենց ոյժը, եւ, ամէն տարակոյս փարատելու համար, որ արդեօք 408/9ի կայսերական կարգաւորութիւնը կ'արժէ թէ ոչ, անհրաժեշտ էր զայն մուծանել օրինագրոց մէջ։ Այս պատճառաւ ալ եզրակացութիւնն ալ թերեւս ճիշդ ըլլայ, թէ այս ներմուծութիւնը կատարուած է Codex repetitiae praelectionis անուանուածին քանիցս քննութենէն ու հաստատութենէն վերջը։

Թէպէտ չէ աւանդուած մեզի, թէ յաջորդ պատերազմական տարիներու միջոցին երկու ազ-

գերուն մէջ առեւտրական յարաբերութիւնը ինչ կերպարանք ստացաւ, այսու հանդերձ կրնանք ընդունիլ, թէ յարաբերութիւնը ամբողջապէս դադրած ըլլալու չէ, մանաւանդ թէ մինչեւ ցայժմ եղածին պէս եւ նոյն վայրերու վրայ՝ գլխաւորաբար երկայնատեւ, գրեթէ տասնուեօթամեայ զինադադարի ատեն շարունակուած պիտի ըլլայ։ Միայն թոյլ տրուած ազատ վայրերէն միոյն նկատմամբ, ինչպէս զայն անուանել կարելի է, փոփոխութիւն տեղի ունեցած էր այդ միջոցին։ Պարսկահայաստանը՝ որ Թէոդոսեան դաշինքէն վերջը սկզբան անդ Իրանէն կախուած յատուկ կազմը ստացած է, 429ին իր ինքնավարութեան մնացորդն ալ տուժելէն եւ իբր պարսկական նահանգ միացուելէն վերջը, նաեւ հին մայրաքաղաքը թագաւորանիստն Արտաշատ իւր քաղաքական եւ տնտեսական նշանակութիւնը կորսնցուց։ Անոր տեղ անցած էր մօտակայ Դուին քաղաքը (Δούβιος)[1] իբր վարչական կենդրոն եւ նիստ պարսիկ կուսակալին կամ Մարզպանին. այս նորաստեղծ վաճառանոցի մէջ Պարսկաստանէն, Վրաստանէն եւ Հնդկաց երկրէն առուտուր ընողներ՝ արեւելեան Հռովմէական պետութենէն դիմող վաճառականաց հետ, որոնք իրենց վաճառքը հոս կը բերէին գնելու եւ փոփոխելու, քովէ քով կու գային։ Յուստի տարակոյս չի մնար, որ Դուին Արտաշատի տեղն անցած է նաեւ իբր շահաստան։

---

1 Պրոկ. ՊՊ. Բ. 25 (263)· Δούβιος χώρα թէ երկիրը եւ թէ տեղը կը նշանակէ։

Այսու ամենայնիւ վաճառականութեան այսպէս ինչ ինչ վայրերու վրայ սահմանաւորեալ ըլլալէն չէր հետեւեր, որ այլեւայլ գաւառներ, ուր կարելի չէր սահմանը ճշդիւ գծել եւ թէ այս եւ թէ այն կողմը ցեղակից բնակչութիւն մը կը նստէր, որոնք իրենց առօրեայ պիտոյքը իրարմէ ստիպուած էին գնել — իրարու հետ իրօք տեղական մանր առուտուր չունենային։ Այսպէս Ռուհայաստանի[1] մէկ քանի մասերու մէջ եւ խորձեանքի[2] մէջ, որ մասամբ Հռովմայեցւոց եւ մասամբ Պարսից կը վերաբերէր։

Թէ յիսուն տարւոյ համար կնքուելի խաղաղութեան մը մէջ դաշնագիրներուն առեւտրական աղերսն ալ խօսքի նիւթ ըլլալու էր, այդ երկու կողման ալ շահը կը պահանջէր, մանաւանդ որ վերջին յայտնի կարգաւորումը մէկ ու կէս դարէ աւելի յառաջ եղած էր[3]։ Սակայն Դարասի մէջ կատարուած այժմեան բանակցութեանց մէջ բնաւ միտք չունէին նորութիւններ խօթել եւ առեւտրական ու վաճառք փոխադրելու հաղորդակցութիւնք իւր սեղմեալ դիրքէն ազատել։ Շատացան մինչեւ ցայժմ եղած կացութիւնը անվթար պահելու եւ դարձեալ զայն դաշնագրութեամբ հաստատե-

1 Պրոկ. de aed. II. 8 (231). Պարսից հետ հոն կատարուած ամուսնութեանց վրայ. տ. Nov. 154 եւ Յուստինոս Բ. 566ին Օրէն.

2 Պրոկ. անդ III 3. (251)։

3 Այսինքն 387ի բաժանման ու խաղաղութեան դաշանց մէջ։

լով։ Այս մասին կը հային խաղաղութեան պայմաններուն երեք տրամադրութիւնները. թ. 3, 4 եւ 5։

1. Ցայժմ տիրող իրաւանց կրկնութիւնն է թ. 3ը։ Ստոյգ է թէ հռովմայեցի եւ թէ պարսիկ վաճառականներուն եւ անոնց բեռներն ու կարաւանները տանողներուն (πορισταί) թոյլ տուեալ է ամէն տեսակ վաճառք (կ'ենթադրուի պահելով ներմուծման եւ արտածութեան արգելքները) երկակողմանի տանելու եւ բերելու, բայց միայն այն որոշ վայրերն ու մաքսային տեղերն (δεκατευτήρια), ուր ի հնուց սովորութիւն եղած է[1]։ Այս տեղերուն որո՛նք ըլլալը պէտք չկար դաշանց մէջ մասնաւոր յիշելու, վասն զի յառաջուան դաշինքներէն եւ երկարամեայ սովորութենէն ծանօթ էին երկու կողման ալ։ Ըստ այսմ նաեւ ապագային համար ալ այն երեք ծանօթ վայրերը՝ Կալլինիկոն, Մծբին եւ Դուին (փոխանակ Արտաշատայ) վաճառականական հաղորդակցութեան բաց մնացին։ Ներմուծութեան եւ արտածութեան արգելքը կարգաւորելու, մաքսի սակագինը որոշելու, ընդհանրապէս առեւտրական որոշումներու գործադրութեան կարգադրութիւնները ընելու համար յառաջուան պէս թէ հռովմէական եւ թէ պարսկական օրէնսդրութեան գործքը մնաց, առանց նպատակ ունենալու մէկալ կողմը կապելու։ Արեւելեան Հռովմայ համար արժէքը չկորսնցուց 408/9ի

[1] Մենանդր 212։

այն վերը յիշուած կարգադրութիւնը եւ նոյնին մէջ յիշուած պատիժները։ Իսկ δεκατευτήριον (տասանորդ) բառէն կրնայ հետեւցուիլ թէ երկու պետութեանց համար ալ որոշուած էր ներմուծութեան մաքսը վաճառքին արժէքին տասը առ հարիւրը։

2. Դեսպանները իրենց ազգաց իրաւանց արտօնութեան զօրութեամբ մաքսային եւ առեւտրական սահմանափակումներէ զերծ էին։ Այս պատճառաւ ալ յիշեալ կայսերական 408/9ի կարգաւորութիւնը Պարսից դեսպանին ուղեկիցներն ալ յայտնապէս զերծ կացուց նոյնէն եւ անոնց ալ հրաման տուաւ մէջը յիշուած երեք վայրերէն դուրս տեղեր ալ վաճառք առնելու եւ տալու, միայն թէ այս բանս in fraudem legis ըլլալու չէր[1]։ Այսպէս ալ այժմեան խաղաղութեան դաշանց մէջ (Թ. 4) ճանչցուեցաւ դեսպաններուն իրաւունքը մաքսէ ազատ՝ վաճառք ներմուծանել, փոփոխելու վախճանաւ եւ անոնց, ինչպէս նաեւ տէրութեան սուրհանդակներուն, մանաւորապէս երաշխաւորութիւն տրուեցաւ երկու պետութեանց մէջ վաճառքը շուտափոյթ անցընել եւ յառաջ տանիլ եւ յարգական ընդունելութիւն ու վարմունք[2]։

3. Արեւելեան Հռովմ եւ Պարսկաստան երկակողմանի հպատակներու հետ առեւտրական

---

[1] Cod. Just. 4. 64. 4. § 3։

[2] Մենանդր անդ։

յարաբերութեանց ժամանակ նոյն կերպով ու հաւասար իրաւունքով կը վարուէին։ Օտար ազգերու վաճառականներ, գլխաւորաբար Արաբացիները, որ ըլլայ Պարսից կողմանէ հռովմէական երկիր, ըլլայ հռովմէական կողմէն Պարսկաստան մտնել կ՚ուզէին, իրաւունք չունէին իրենց համար ալ բուն հպատակներուն պէս վարմունք պահանջելու։ Սակայն Եփրատի արեւմտեան եւ հարաւային արեւմտեան կողմն երկու պետութիւնները բաժնող անապատ երկիրը՝ սահմանները խիստ կերպով գոցել գրեթէ անհնարին կ՚ընէր եւ միշտ վտանգ հետը կը բերէր, որ գաղտագողի ճամբաններով մաքսանենգութեամբ ապրանք ներմուծուի, որուն վրայ դժուարաւ կրնար հսկողութիւն ըլլալ։ Այս բանս եւ թերեւս նաեւ առեւտրական ինչ ինչ ճիւղերու մէջ անհաճոյ մրցակցութիւնը յառաջ բերին Թ. 5ի մէջ հաստատուածը։ Ըստ այսմ՝ Արաբացիները, ըլլան դաշնաւոր կամ ոչ — ուստի նաեւ հարաւէն՝ Եմէնէն եկողները — ինչպէս նաեւ կէս բարբարոս ազգաց վերաբերողները, ուզած ճամբաներով չէին կրնար երկու պետութեանց սահմաններուն մտնել, հապա միայն առհասարակ գործածուած հաղորդակցութեան ճամբաներով. իսկ վաճառք բերելու եւ տանելու համար հռովմէական կողմանէ Դարաս՝ իսկ պարսկական կողմանէ Մծբին բացուեցաւ, ուրիշ վայրեր լոկ բարձրագոյն հրամանաւ կրնային մտնել։ Սահմանի պաշտօնէից պատուէր եղաւ այս կանոնին հակառակ գործողութեանց եւ մաքսանենգու-

թեանց դէմ վաճառքը գրաւել, առանց նայելու թէ ուսկից է այն եւ ուրիշ պատիժներ ի գործ դնել[1]։

## Դ. Փախստականք, գերեալք:

Երկու պետութեանց մէջ ալ պատերազմէն ի վեր շատ մը փախստականներ կը գտնուէին որոնց մէկ մասը դասալիք էր, միւսը այնպիսի անձինք, որ քաղաքական եւ կամ կրօնական պատճառէ մը դրդեալ՝ թշնամի երկրին մէջ ապաւինած ու ապաստան գտած էին։ Այսպէս բիւզանդական արքունեաց մէջ ապաստան գտած էր պարսիկ Կաւատ իշխանը, որ իբրեւ գահի հետամուտ՝ խոսրովու դէմ դաւաճանութեան մը մասնակցած էր եւ յետոյ Ներսէսի տակ Գոթաց դէմ պատերազմ մղեց[2]։

---

1 Մենանդր անդ. Սահմանեալ է դարձեալ. զի մի ուրեք երբեք վաճառականաց Սարակինոսաց կամ այլոց բարբարոսաց մուտ իցէ յերկիր տէրութեան երկոցունց պետութեանց ընդ անսովոր ճանապարհս եւ ոչ իսկ երբեք ընդ ծանօթականսն, այլ ընդ Մծբին եւ Դարաս երթիցեն եւ ոչ բնաւ առանց հրամանի երկուց աշխարհաց գլխաւորացն։ Այլ որ ժտիցին յանդգնել գործել հակառակ այնր, որ հաստատեալն է, կամ որպէս ասի նենգել զմաքսն, եթէ կալեալ լիցին ի սահմանակալ առաջնորդացն, հանդերձ իւրեանց վաճառօքն, զորս բերեն, եթէ վաճառք ասորեստանեայք իցեն, եթէ հռովմէականք, զպատիժ պատուհասին, որ օրինօքն սահմանեալ են, կրեսցեն։

2 Կաւատ Խոսրովի երէց եղբօր Զամի (Ζάμης) որդին էր։ Պրոկ. ՊՊ. Ա. 23 (115 յՀ.) կը յիշէ այն երկրայութիւնը, թէ Բիւզանդիոն փախած եւ Յուստինիանէն ընդունուած անձը իրօք բուն իշխանն էր. ԳՊ.ի

Նոյն ինքն Ներսէս, քրիստոնեայ Պարսկահայ մը, բազմաթիւ համախոհ հայրենակիցներու հետ փախուստ տալով՝ զիրծած էր պարսկական իշխանութենէն եւ Բիւզանդիոնի պաշտպանութեան ապաւինած[1]։ Միւս կողմանէ հայ նախարարք ալ, որոնք Յուստինիանէն ապստամբած էին, Խոսրովու քով պատրաստակամ ընդունելութիւն գտած էին[2]։

Բոլոր այս փախստականներուն՝ խաղաղութեան դաշինքովը (Թ. 6) անարգել թոյլ տրուեցաւ իրենց հայրենիքը դառնալ եւ ամէն պատժէ ազատ կացուցուեցան։ Միայն թէ այս բարերարութիւնը կ'արժէր լոկ անոնց համար, որ պատերազմի ժամանակ փախած էին. այժմ որ խաղաղութիւն սկսած էր, երկու պետութեանց երկիրներն ալ դարձեալ խիստ կերպով փակուեցան։ Անոնք որ այսուհետեւ իրենց հայրենիքը թող տալով որեւէ պատճառաւ օտար երկիր փախչիլ փորձէին, անպայման մերժուելու եւ դրացի տէրութեան յանձնուելու էին[3]։

Եթէ մեր օրերը քաղաքակիրթ երկիրներու մէջ եղած պատերազմը խաղաղութեամբ մը վերջանայ, գերեալները ետ կը տրուին ու կը փոխանակուին։ Տարբեր էր սակայն այն ժամանակները, որոնց վրայ հոս կը խօսինք։ Պարսիկ-

---

մէջ 26 (599) անոր Իտալիայի մէջ կատարած պատերազմական ծառայութիւնները կը յիշէ։

1 Պրոկ. ՊՊ. Ա. 16 (79)։

2 Անդ Բ. 3 (163)։

3 Մենանդր 212

ները կարծես թէ բնաւ հոգ չէին ըներ հռովմայեցւոց ձեռքը ինկած գերիներուն համար եւ զանոնք իրենց բախտին կը թողուին։ Բեղիսարին գերածներէն բազմութիւն մը նոյն իսկ իբր օժանդակ գունդ Գոթաց դէմ գործածուեցաւ[1]. ուրիշ ամէն բանի մէջ պատերազմի գերիներու հետ կ'երեւայ թէ հռովմէական պատերազմի իրաւունքը կը բանեցուէր։ Պարսիկ իրաւանց հայեցողութիւնը գերեալները թագաւորին ստրուկ կ'ընէր, որ ուզածին պէս անոնց եւ անոնց ուժին վրայ տրամադրութիւն կ'ընէր։ Յաճախ հասարակաց աշխատութեանց, ջրանցքներու եւ ուրիշ շինութեանց կը գործածուէին կամ նաեւ հեռաւոր վայրեր կը տեղափոխուէին[2]։ Շատ անգամ ի գործ դրուած պատերազմական սովորութիւն էր, առնուած քաղաքներուն բոլոր բնակչութեան տիրապետել, գերի վարել կամ պարսիկ հողի վրայ զետեղել. Նոր քաղաքներ հիմնարկելու համար[3]։ Այս բախտին հանդիպեցան ի մէջ այլոց Անտիոքի բնակիչները, երբ Խոսրով զայն գրաւեց։ Կանանց ու տղոց հետ Տիգրիսի եզերքը Տիզբոնի մօտ փոխադրուեցան եւ անոնց ցոյց տրուեցաւ վայր մը, որ հնոյն ծրագրին համեմատ Նոր քաղաք մը շինեն, որ առաջինէն տարբերելու համար Ἀντιοχεία ἡ Χοσρόου կոչուեցաւ։ Սակայն բնակիչներուն

---

1 Պրոկ. ՊՊ. Բ. 19 (235), ԳՊ. Գ. 3 (291)։

2 Նէօլդեկէ, Տաբարի 32. 33։

3 Ամմիանոս 20. 6. 7. Սինգարայի բնակիչները „ad regiones Persidis ultimae asportati եղան։“

քրիստոնէական կրօնը թագաւորէն պաշտպանութիւն գտաւ եւ այլուստ ալ շատ բարիք տեսաւ. զանոնք իւր անմիջական վարչութեան եւ իրաւաբանութեան տակ առաւ եւ զանոնք այն գաւառին սատրապէն, որուն կը վերաբերէին, ազատեց[1]։ Խոսրով լաւ ճանչցած էր, որ հոն բնակութիւն հաստատող Յոյները բարձրագոյն մտաւոր մշակութեան ու կրթութեան տածիչ են, ուստի ջանաց իւր երկրին ու ժողովրդեան օգտին գործածել զանոնք։ Ասով յայտնի է թէ անհնարին էր որ այժմ խաղաղութեան ժամանակ այս նոր գաղթականներուն թոյլ տրուէր իրենց նոր հայրենիքը թողուլ եւ հին տեղերնին դառնալ, եթէ նոյն իսկ ուզէին, որովհետեւ պարսկական հպատակ եղած էին։ Ո՛չ անոնց եւ ո՛չ ալ պատերազմի ժամանակ ուրիշ գերեալներու նկատմամբ խաղաղութեան դաշինքը որոշում մ'ունէր։

### Ի. Հատուցման պահանջներ:

Երկու ժողովրդոց սահմաններուն վրայ բնակողներուն մէջ եղած կռիւները եւ նոյնին հետեւութեամբ հանդիպած անձանց վիրաւորումներ ագարակաց եւ արջառոց վնաս հասցընել եւն, նոյն տեղերու սովորական պատահարներու կարգէն էին, ինչպէս նաեւ այս պատճա-

---

1 Պրոկոպիոս ՊՊ. Բ. 14 (214), որուն հետ կը համաձայնին արեւելեան աղբիւրները՝ Տաբարի (Նէօլտեկէ) 165 Ֆիրդուսի 6, 168։ Քրիստոնէութեան ընդունելութեան վրայ տ. Թէոփիլ. Ե. 6. 7 (200)։

ռաւ յարուցուած գանգատներն ու պահանջները։ Հասարակաց խաղաղութեան համար աւելի վտանգաւոր էր, եթէ ամբողջ հասարակութիւններ, ինչպէս մէկ պետութեան վերաբերող քաղաքներ կամ գիւղեր[1] իրենք իրենց հաշուին յարձակումներ ընէին, արշաւանքներու եւ վրէժխնդրութեան ելլէին մէկալ պետութեան վերաբերողներու դէմ. վասն զի այս պատճառներով դիւրաւ կրնար պատերազմի հրդեհը բորբոքիլ։ Այսպիսի պատահարներու առջեւն առնուլ գրեթէ անհնարին էր՝ սահմանի բնակիչներուն խռովայոյզ նկարագրին պատճառաւ։ Այս էր պատճառը որ խաղաղութեան կը ջանային, ազգային իրաւական համաձայնութիւններով կ'աշխատէին բառնալ գոնէ նոյն վնասները՝ խաղաղական կերպով խընդիրը յատուկ գործելու կերպով մը լմնցընելով։ Որովհետեւ այդպիսի պահանջներ անկարելի էր որ սովորական դատաստանի ճամբով լմնային, ըստ որում հոս խնդիր էին զանազան ազգութեանց մէջ ելած վէճերը եւ ամենեւին ճանչցուած չէր, որ օտարը այն հաւասար իրաւունքն ունենար իր իրաւունքը պաշտպանելու մէջ, ինչ իրաւունք որ ունէր բնիկը։ Գոնէ հռովմէական իրաւունքը չէր ընդունիր, որ բարբարոսը civis Romanusին ունեցած իրաւունքը վայլէր։ Նոյն իսկ եթէ ընդունինք ալ, Անտոնինոս Կարակալլա կայսեր ձեռքով orbis Romanusի

---

1 Մենանդր πόλις բառը կը գործածէ, զոր սակայն ընդարձակ իմաստովն առնելու է։

մէջ բոլոր ազատներու քաղաքացիական պատիւ-տրուելով՝ օտար ազգաց վերաբերողները իբր Peregrini նկատուէին[1], այսուհանդերձ այս բանս միայն անոնց համար իմանալու է, որոնք պետութեան մէջ հաստատուած էին եւ ոչ թէ ամէն որեւիցէ ոչ Հռովմայեցւոյ։ Շատ անհաւանական է, որ Հռովմայեցի դատաւոր մը թոյլ տար սահմանէն դուրս բնակող Պարսիկի մը Հռովմայեցի քաղաքացւոյ մը դէմ ամբաստանութիւն ընել եւ լսելի ըլլալ։ Իսկ ասկէ աւելի անհաւանելի է, որ Հռովմայեցի մը Պարսկի մը դէմ իւր գանգատը պարսիկ պաշտօնեայի մը մատուցանելու ելլէր։ Ահա այս պատճառաւ ինքնին մէջտեղ կ'ելլէր միջազգային միաբանութեանց պէտքը այսպիսի կռիւներու դէմ։ Խաղաղութեան դաշինքին Թ. 7 եւ Թ. 11 պայմանները այն յարաբերութեանց կարգաւորութեան վրայ են, որոնց վրայ հոս խօսեցանք։

1. Թ. 7. Կը հայի անհատի ընդդէմ անհատի յարուցած վնասու պահանջներուն։ Նախ տեղւոյն բնագիրը դնենք եւ ապա տանք մեկնութիւնը[2]։

*Ζ' μέρος τῶν σπονδῶν, ὥστε τοὺς ἐπεγχαλοῦντας περὶ τοῦ σίνεσθαί τι σφρᾶς τοῦς ἀντιπολιτευομένους δίκῃ τέμνεσθαι τὸ φιλονειχούμενον, ἢ δἰ ἑαυτῶν τῶν τὴν βλάβην πεπονθότων ἢ δἰ οἰχείων ἀνθρώπων ἐν τοῖς μεθορίοις*

---

[1] Ինչպէս Mitteis, Reichsrecht und Volksrecht 160 ff. կ'ընդունի։

[2] Մենանդր 212։

παρὰ τοῖς ἄρχουσιν ἑκατέρας πολιτείας ξυνιόντων· οὕτω δὲ τὸν ζημιώσαντα ἀκέσασθαι τὸ σκάζον. (Է. մասն գաշանց. զի եթէ ոք բողոք բառնայցէ, եթէ վնաս ինչ հասեալ իցէ ինքեան ի հակառակորդ կողմանէ անտի պետութեան իւրոյ, արդարութեամբ վախճան դիցի վիճին կամ յայնցանէ իսկ՝ որ զվնասն կրեցին կամ ի մասնաւոր անձանց, որ ի սահմանագլուխս ի մի ժողովեալ իցեն ընդ իշխանս երկոցունց պետութեանց. եւ որոց վնաս ինչ հասուցեալ իցէ դարմանեսցեն զվնասն։)

Եթէ բողոք բարձուի, որ մէկ պետութեան վերաբերողները հակառակորդ պետութեան հպատակէն վնաս կրած են, կռուոյ առարկան ըստ օրինաց ու պատշաճից կարգի դրուելու է եւ վնասողին օձիքէն բռնելու է վնասին հատուցումն ընելու համար։ Այս բանս կրնայ ըլլալ. կամ անձամբ անոնց ձեռքով, որ վնասը կրած են (δὶ ἑαυτῶν τῶν եւ այլն), կամ մասնաւոր անձնաւորութեանց ձեռքով (δὶ οἰκείων ἀνθρώπων), որոնք սահմանի վրայ տեղ մը՝ երկու պետութեանց հոնտեղի բարձրագոյն պաշտօնէից հետ՝ խնդիրը քննելու եւ կարգադրելու համար կը ժողվուին։

Հետագայ դիտողութիւնները լուսաւորութեան համար կը կարգենք։

Δίκῃ τέμνεσθαι կերպական դատ վարել չի նշանակեր, այլ լոկ կը յայտարարուի, որ խնդիրը իրաւանց ու արդարութեան համապատասխան իրաւընտրութեամբ պիտի կարգա-

գրուի խաղաղօրէն եւ այն կ՚արժէ երկու ճամբով ալ, զոր վնաս կրողները ազատ են իւրաքանչիւր դէպքի մէջ ընտրելու։

Արդ ի՞նչպէս ըմբռնելու է առաջին կարելիութիւնը, որ կը բացատրուի δὶ ἑαυτῶν-ով եւն։ Թէ այս պարագային մէջ վերջը յիշուած ἄρχοντες-ներն ալ գործակցութիւն պիտի ունենային անկարելի է նոյն իսկ լեզուական տեսակէտով։ Իմ կարծեացս համաձայն ասով կրնայ իմացուիլ թէ վնաս կրողներն անձամբ խնդիրը ձեռք առնուին եւ առանց պաշտօնական անձնաւորութեանց գործակցութեան անընդմիջաբար վնասողներուն հետ յարաբերութեան մտնէին, որպէս զի ըլլայ առանձնական ճամբով, ըլլայ իրաւախոհութեամբ, ապահովացում տալով կամ ուրիշ միջոցներով իրենց հատուցման պահանջին լրացումն ստանալ փորձէին։ Այս ճամբուն ցոյց տրուիլը կրնայ աւելորդ համարուիլ, սակայն մտածելու է, որ հատուցումն իրագործելու ժամանակ օտար պետութեան օգնութիւնը կը պահանջուէր եւ թէ ասով լռելեայն նոյնին շնորհուիլը կ՚ապահովուէր։

Երկրորդ ճամբան հետաքրքրական օրինակ մը կու տայ միջազգային իրաւախոհ ատեանի մը. թէ այսպիսի ատեանի մը վրայ է խնդիրը տարակոյս չի վերցըներ։ Իրաւընտիր ատեանը խառն ատեան մըն է թէ՛ ըստ ազգայնութեանց եւ թէ՛ մասնակցողներու կողմանէ։ Կը կազմուի երկու պետութեանց պաշտօնեաներէն ու իրաւընտիր անձինքներէն։ Առաջինները խնդրոյ տակ

եղող սահմանագաւառներուն աւագներն են, ուստի հռովմէական կողմանէ Praeses provinciae կոչուածը կամ անոր համապատասխան գաւառական բարձրագոյն պաշտօնեան. իսկ պարսկական կողմանէ սատրապը (մարզպան)։ Ἄρχοντες բառը սովորագոյն տեղական առաջնորդները ի բաց կ'առնու, անշուշտ անոր համար, վասն զի կարելի չէր վստահիլ անոնց եւ տալ այն ճոխութիւնը, որ հարկաւոր էր։ Իսկ իրաւընտիր անձինք ընտրուելու էին οἰκεῖοι ἄνθρωποι, այսինքն երկու ազգերուն վերաբերողներէն անոնք, որ սահմանի վրայ կը նստէին եւ որոնք գործին համար պահանջուած հմտութիւնը ունէին[1]։ Այս է հօս οἴκειοςի նշանակութիւնը. ընտանեաց անդամի վրայ, ինչ որ ալ նշանակէ, չի կրնար խօսք ըլլալ։ Իսկ թէ ով պիտի ընտրէր իրաւընտիր անձինքը եւ որչափ ըլլալու էր անոնց թիւը, ըսուած չէ։ Միայն թէ ξυνιόντων եւն սութեան կերպէն կը հասկցուի, որ պաշտօնեաները չէ որ զանոնք կ'անուանեն։ Ամենէն հաւանականն այն է, որ ուղղակի դատ վարողները իրաւունք ունէին երկու կողման համար առաջարկել հաւասար թուով մարդիկ եւ զանոնք ընտրել։ Դատավարութիւնը այնպէս ըլլալու է, որ երկու պաշտօնէից կ'իյնար, իսկ իրաւընտիր ատեանին նախագահներու, դատին բանակցութիւնները վարելը, իսկ իրաւընտիրներուն՝ որոշել նկատի առնուած խնդիրները, գլխաւորաբար վնասի հատուցման չափին բարձրութիւնը։

[1] Boni viriներու նմանութիւն։

Դատավճիռը կտրուելու ժամանակ երկու գործիչներն ալ գործակից եղած ըլլալու են. բայց վճիռը տրուելու ատեն խնդիրին այնչափ իրաւունքը խիստ կերպով գործադրելու վրայ չէր (որ Նիւթական իրաւունքը պէտք էր գործածուիլ) որչափ դատավճիռ մը ex aequo et bono. Գործադրութիւնը այն պաշտօնէին կ'իյնար, որուն իրաւաբանութեան տակ կ'երթար դատապարտեալը։

2. 11դ պայմանին բնագիրը, որ յիշեալ երկրորդ դատակարգութեան տակ գացող դէպքերուն նկատմամբ է, հետեւեալն է[1].

*Μία πρὸς τῇ δεκατῇ τῶν σπονδῶν βεβαίωσις· ὥστε εἰ πόλις ἑτέραν ζημιώσει πόλιν ἢ ὁπωσοῦν διαφθείρει τι τῶν αὐτῆς μὴ τῷ νόμῳ τοῦ πολέμου μήτε μὴν δυνάμει στρατωτικῇ, ἄλλως δὲ δόλῳ τινὶ καὶ κλοπῇ· εἰσὶ γὰρ τοιοίδε τινὲς ἀνασιουργοὶ οἱ ταῦτα πρἄσσοντες, ὡς ἂν πολέμου ἔσοιτο πρόφασις· ἐβεβαιώθη τοιγαροῦν τὰ τοιουτότροπα ἀναζητεῖν ἐς τὸ ἀκριβὲς καὶ ἐπανορθοῦσθαι τοὺς δικαστὰς τοὺς ἐν τοῖς πέρασιν ἑκατέρας πολιτείας ἱδρυμένους.*

*Ἐι δὲ γὲ αὐτοὶ οὐκ ἔσονται ἱκανοὶ ἀναστέλλειν τὰς πρὸς ἀλλήλους τῶν ἀστυγειτόνων φθορὰς, ἐστέρχθη ὥστε τὴν διαδικασίαν ἀναπέμπεσθαι ὡς τὸν τῆς ἕω στρατηγὸν, ὡς εἰ γὲ εἴσω μηνῶν ἓξ μὴ τμηθείη τὰ τῆς ἁμίλλης καὶ ὁ ζημωθεὶς μὴ λήψεται τὸ ἀπολωλὸς, τὸν*

---

1 Մեն. 213։

ἀδικήσαντα λοιπὸν ἐπὶ ποινῇ ἐς τὸ διπλάσιον τῷ ἠδικημένῳ εἶναι ὑπεύθυνον.

Ὡς εἴγε μηδὲ οὕτω πέρας ἕξον, διετυπώθη τὸ πονοῦν μέρος πρεςβείαν στέλλειν ὡς τὸν βασιλέα τοῦ ἠδικηκότος· εἶτα εἰ μηδὲ ὑπὸ τοῦ βασιλέως γενήσεταί οἱ τὸ ἀποχρῶν καὶ διπλοῦν τὸ ὀφληθὲν ἀναλήψεται κατὰ τὸ ὡρισμένον ἐντὸς ἐνιαυτοῦ, ὅσον ἐπ' εκείνῳ τῷ δόγματι διαλελύσθω τὰ τῶν σπονδῶν.

(Մետասաներորդ պայման դաշանց հաստատի. զի եթէ մի ի քաղաքաց հասուցէ վնաս այլում քաղաքի կամ որով եւ պէտ օրինակաւ աւերեսցի ինչ ի սորայոց, ոչ ըստ օրինաց պատերազմի եւ ոչ զօրութեամբ զինուց, այլ դաւով եւ յափշտակութեամբ, քանզի են իսկ այնպիսիք ոմանք չարագործք, որ զայսպիսիս գործեն, յորոց յառաջ գայցեն պատճառանք մարտից պատերազմաց, աստի հաստատեալ կարգեցաւ, զի այսպիսի իրք քննեսցին ճշգրիւ գտակաւ եւ ի դատաւորացն՝ որ նստիցին ի սահմանս երկուց պետութեանցն, ուղղեալ յարդարեսցին։

(Այլ եթէ առքա չիցեն բաւականք արգելուլ զփոփոխակի վնաս սահմանակից քաղաքացն, սահմանի, զի վէճն դիցի առաջի զօրավարին արեւելից, որոյ եթէ ի ժամանակի վեցից ամսոց ոչ հատեալ իցէ զվճիռն, բարձեալ զկագն եւ զկռիւ եւ որ տուժեացն ոչ ընկալցի անդրէն զոր կորոյս, յայնժամ, որ պարտապանն է պարտաւոր լիցի հատուցանել զկրկնապատիկն։

(Եթէ եւ այսու չլինիցի վախճան, կարգեմք, զի կողմն որ զրկեալ իցէ, հրեշտակս արձակեսցէ առ ինքնակալն այնր կողման, որ բռնադատեալ է. եւ եթէ թագաւորն ոչ հատուսցէ զվնասն եւ չդարձուցանիցէ զկրկինն մինչեւ ցամ մի, ամենեւին իսկ եղծեալ համարեսցին դաշինքն։)

Այս ուրեմն հոս միաբանութեամբ պատուէրներ դրուած են, թէ ինչպէս վարուելու է եթէ հասարակութիւն մը (πόλις ընդարձակ մտօք առնելու է, ինչպէս վերն լսուեցաւ) միւս պետութեան հասարակութենէ մը՝ պատերազմ չեղած ատեն, ուստի խաղաղութեան ատեն յարձակում կրէ եւ իրեն կամ իւր բնակչաց որեւէ վնաս հասցընէ[1]։ Այսպիսի կռուի առիթները խափանելու եւ վնաս կրողին հատուցում ընելու համար, ազգային իրաւական դատավարութեան զարմանալի եղանակի մը վրայ միաբանուած է երեք իրարու յաջորդող աստիճաններով։

ա) Նախ եւ յառաջ սահմանագաւառներու երկակողմանի դատաւորները որոշուած են, որպէս զի միաբան քննեն ու վճռեն այսպիսի դէպքեր։ Նաեւ հոս ուրեմն միջազգային իրաւընտիր ատեան մը գոյութիւն ունի։ Սակայն մինչդեռ Թ. 7ին համաձայն բարձրագոյն կարգի գաւառական պաշտօնեաները (ἄρχοντες) կը

---

1 Անշուշտ εἰσὶ γὰρ τοιοίϑε — πρόφασις միջանկեալը (Passus) դաշանց արձանագրութեան մէջ չկար. Մենանդրի կամ իւր գործածած Պետրոսի դիտողութիւնն է։

սահմանուքին, հոս դատաւորական տեղական իրաւասու մեծերն (δικασταί) են, որ խառն իրաւընտիր ատեանը կը կազմեն, մէկ հռովմայեցի եւ մէկ պարսիկ պաշտօնեայ։

Դատավարութիւնը իբր պաշտօնական տեղեկատու նախաքննութիւն նկատելու է. անպաշտօնական իրաւընտիրներու մասնակցութիւնը, ինչպէս Թ. 7ի դէպքերու մէջ կար, հոս անոր համար չկայ թերեւս, որ հոս խնդրոյն մասնակիցները ոչ թէ անհատ անձինք են, այլ հասարակութիւններ եւն։ Բայց շեշտելու պէտք չկայ, որ դատաւորները իրենց տեղեկութեանը համար ազատ էին իրազեկ անձինք եկակոչ ընել եւ լսել։ Վճռոյն վրայ, որով յանցապարտութեան եւ վճարելի հատուցման չափը պիտի որոշուէր, դատաւորները միաբան խորհրդակցութեամբ միաբանելու էին։

ը) Եթէ դատաւորները վճռոյն վրայ չկարենան միաբանիլ եւ կամ ուրիշ որեւէ դժուարութիւն ծագած ատեն՝ զորոնք լուծելու ատակ չեն (οὐκ ἔσονται ἱκανοί), այն ատեն դժուարութիւնը — διαδικασία[1] — ի պաշտօնէ Արեւելքի զօրաց մագիստրիանոսին (Magister militum Orientis, ὡς τὸν τῆς ἕω στρατηγόν) առջեւ դրուելու եւ անկէ վճռուելու է[2]։ Ասիկա խնդիրն այնպէս փու-

[1] Διαδικασία հոս չունի այն արուեստական նշանակութիւնը, ինչպէս յունական դատաստանական լեզուին մէջ։

[2] Թէ դատաւորներուն ձեռքով փոխանցումը ex officio կ'ըլլար, յայտնի է ἀναπέμπεσθαι բառէն։

թացընելու էր, որ մնաս կրողները ամէնէն ուշ վեց ամսուան ժամանակամիջոցի մէջ իրենց իրերն ստանան: Եթէ այն ժամանակամիջոցին մէջ իրենց գոհացում չտրուի — եւ այս ձգձգումը վերագրելի է հակառակորդ կողման եւ ոչ թէ Արեւելքի զօրաց մագիստրիանոսին — այն ատեն յանցաւոր մասը պէտք է ի պատիժ՝ դատապարտուի հատուցման գումարին կրկինը վճարելու եւ առ այն բռնադատուի, ἐπὶ ποινῇ ἐς τὸ διπλάσιον[1]: Շատ զարմանալի եւ թերեւս իր տեսակին մէջ եզական երեւոյթ, որ բարձրաստիճան Հռովմայեցւոյ մը իշխանութիւն տրուի որոշիչ վճիռ տալու: Սակայն ասոր ընտրութիւնը Պարսից կողմանէ իբր բարեացակամութեան եւ վստահութեան նշան համարելու չէ: Արեւելքի զօրաց մագիստրիանոսին անձին վրայ միաբանիլն այն պատճառաւ եղած է, որ ասիկա իբրեւ վերին հրամանատար եւ բարձրագոյն քաղաքական պաշտօնեայ, Արեւելքի վիճակին մէջ առանձնական գաւառներուն կուսակալներուն մեծն էր եւ իբրեւ կայսեր փոխանորդ — vice sacra — դրացի պարսիկ երկրամասերուն սատրապներէն աւելի բարձր դիրք մը կը գրաւէր: Իրաւընտիր ատեանը նոյն իսկ իր անձին հանդէպ կը պահէր նկարագիրը. վասն զի ինքը վճիռը կ՚արձակէր ոչ թէ իբր գերագոյն դատաւոր, այլ ստորակարգ իրաւընտիր դատաւորներու իբր գլուխ, այսպէս ըսելու համար, իբր անոնց վերին դա-

---

1 Ակամայ մարդուս միտքը կու գայ հետեւեալ ասացուածը. lis crescit in duplum.

տաւորը․ εἰ — μὴ τμηθείη τὰ τῆς ἁμίλλης խօսքերը տարակուսի տեղի չեն թողուր։

Թէ Արեւելքի զօրաց մագիստրիանոսը իւր դատավճիռը միայն իւր պետութեան մէջ գտնուող եւ ոչ թէ պետութենէն դուրս ապրող Պարսիկներուն համար կրնար արձակել, դաշանց պայմանին մէջ ըսուելու պէտք չկար, վասն զի յինքենէ կը հասկցուի։

գ) Կրնային սակայն այնպիսի դէպքեր հանդիպիլ, որ խնդիրը ոչ ա)ի եւ ոչ ալ բ)ի ճամբով լուծուէր․ այսպէս գլխաւորաբար երբ դատավճիռը դժուարութեանց բախէր, վասն զի օրինակի համար դատապարտեալին վրայ իրաւաբանական իշխանութիւն չունենային դատաւորները կամ Արեւելքի զօրաց մագիստրիանոսը։ Այսպիսի դէպքերու մէջ վնաս կրող մասին (τὸ πονοῦν μέρος) վերջին ճամբայ մ'ալ ցոյց կը տրուէր, այսինքն դիմել երկու ինքնակալներէն անոր, կայսեր եւ արքայից արքային, որուն հպատակ է յանցաւոր կողմը։ Իսկ այն որ օգնութեան կը կոչուի, պարտական է յանցաւորը բռնութեամբ ստիպել իւր պարտաւորութիւնը կատարելու, այսինքն լի եւ լի հատուցում եւ մանաւանդ կրկնավճարը ընելու վնասուածին եւ այն ալ առ առաւելն մէկ տարուան ժամանակամիջոցի մէջ, ապա թէ ոչ օգնութեան զլացման կամ յապաղման հետեւելու է խաղաղութեան եղծումը։ Այսպէսով երկու դաշնագիր ինքնակալները երաշխաւորութիւն յանձն կ'առնուին ազգային իրաւական օգնութիւն մատուցանելու։

Սակայն երկու վեհապետներէն մէկուն կամ միւսին միջամտութիւնը չկարծուի, որ իբր թէ դատին վերջին եւ բարձրագոյն վճիռը տալու եւ կամ շնորհք մ'ընելու համար է։ Վասն զի ըլլայ առաջին իրաւընտիր ատեանին, ըլլայ Արեւելքի զօրաց մագիստրիանոսին տուած վճիռը, նիւթական վերաքննութեան ենթարկել երբեք տեղի չէր ունենար։ Մանաւանդ թէ պատկանեալ տեղւոյն իմաստէն, διπλοῦν τὸ ὀφληθέν, խօսքերէն եւ պարտապան կողման իբր ἠδικηκώς կոչուելէն կը հետեւցուի, որ վճիռը վերջնականապէս կտրուած է եւ խնդիրը այն չէ որ նոյնին դէմ կռիւ բացուի, այլ միայն ի գործ դրուի։ Վնաս կրողներն այս պատճառաւ պատկանեալ ինքնակալին արդարութեան իշխանութեան չեն դիմեր, այլ անոր գործադրելու իշխանութեան, որով արդէն իսկ կայացող վճիռը պիտի իրագործուի։

## Զ. Դաշանց ապահովացումը:

Պարսիկ սովորութեան ալ համաձայն էր ազգային իրաւական դաշինքներուն պահպանութեան համար մասնաւոր ապահովացումներ տալ։ Ամմիանոս եւ Պրոկոպիոս կը յիշատակեն, որ դաշինքն ապահովելու համար երբեմն պատանդներ կը տրուէին, որոնք նոյնին գործադրութենէն վերջը կը փոխանակուէին[1]։ Սովորութիւն էր նաեւ երդմամբ հաստատութիւն տալ։ Այսպէս

---

1 Ամմիանոս ԻԵ. 7. 13. Պրոկոպ. ՊՊ Ա. 21 (111).

Յովիանոս կայսեր եւ Շապուհ Բ. Թագաւորին մէջ գրուած ամօթալի խաղաղութեան ժամանակ[1]։ Պրոկոպ Յուստինիանու բերանը Խոսրովու դէմ կշտամբանք կը դնէ, 532ի մշտնջենաւոր կոչուած խաղաղութիւնը չպահելուն համար, եւ այս կշտամբութիւնը ուրիշ տեղեր ալ կը կրկնէ[2]։ Բայց որովհետեւ ապացոյց չկայ թէ Խոսրով յիշուած խաղաղութիւնը պահելու երդում ըրած ըլլայ — նոյնը նաեւ Յուստինիան ըրած ըլլալու էր, — ուստի հոս ալ կ'երեւայ թէ Պրոկոպ իւր Պարսից Թագաւորին դէմ ունեցած հակակրութենէն մղուած կ'ուզէ հաստատել այն՝ զոր չի կրնար ապացուցանել։

Դարասի մէջ գրուած խաղաղութեան դաշինքը մեզի հասած տեղեկութեանց նայելով՝ թէպէտ երկու ինքնակալներէն երդմամբ հաստատուած չ'երեւար, բայց լիազօրները պատշաճ համարած են նոյն դաշանց կրօնական ոյժ մը տալ, որ նոյնչափ զօրաւոր էր։ Դաշինքին թիւ 12ին մէջ խաղաղութիւնը Աստուածութեան պաշտպանութեան կը յանձնուի, որմէ կը խնդրուի եւ կը թախանձուի, որ դաշինքը յարգող կողման սիրով ու խնամքով օգնական ըլլայ, իսկ դաշինքէն շեղողին թշնամի եւ հակառակորդ հանդիսանայ[3]։ Կրօնական տարբերութեամբ

---

1 Ամմիանոս անդ "foederata itaque pace eaque iurisiurandi religionibus consecrata.,,

2 Պրոկոպիոս ՊՊ. Բ. 5 (170). Բ. 10 (190). Վան- չինութ. Բ. 10 (237)։

3 Մենանդր 213։

հանդերձ հոս ընտրուած ձեւով կրցան երկու կողմերն ալ իրենք զիրենք կապուած համարիլ։ Վասն զի եթէ կոչուած Աստուածութիւնը Հռովմայեցւոց համար քրիստոնէից Աստուածն էր, Պարսից համար ալ իրենց յարգած բարձրագոյն էակը՝ Արամազդն էր։

Եթէ այս կրօնական ապահովացումը պարզապէս մասնակիցներուն խղճին թող կը տրուէր, բայց ուրիշ ապահովացում մը աւելի գործնական արժէք մ'ունէր։ Երկու դիպաց մէջ դաշանց որոշմանց վրայ աւելցուած էր բեկիչ յօդուածը, որուն համաձայն եթէ այս մասնաւոր պայմաններն չպահուէին՝ անպատճառ յաջորդելու էր դաշանց եղծում եւ խաղաղութեան բարձումը եւ ասով նաեւ միւս դաշնադիրը ipso iure կ'ազատէր իւր դաշանց մէջ ստացած պարտաւորութիւններէն, զ. օ. տարեկան վճարքներէն։ Այս ազդեցութիւնը կ'ունենար դաշինքը, երբ նոր ամրութիւններ կանգնելու արգելքը ոտքի տակ առնուէր (Թ. 8)[1], եւ երբ այն ինքնակալը՝ որուն կը դիմուի ըստ Թ. 11ի դէպքերու, վնաս կրողին մէկ տարուան մէջ հատուցում ընելու, իւր պարտքը չի կատարեր[2]։ Ստոյգ է խաղաղութեան հիմունք կազմող գլխաւոր պայմաններուն ապահովացման համար բեկիչ յօդուածի մը պէտքը չկար, վասն զի

---

[1] Անդ 212. — *καὶ ἐκ τούτου διαλυθήσονται αἱ σπονδαί.*

[2] Անդ *ὅσον ἐπ' ἐκείνῳ τῷ δόγματι διαλελύσθω τὰ τῶν σπονδῶν.*

տօր կատարումէն կախում ունէր խաղաղութեան արժելը կամ չարժելը, սակայն մէկալ պայմաններուն համար այս յօդուածին պակասութիւնը այն նշանակութիւնը ունէր, որ նոյնին բռնաբարումով անպատճառ խաղաղութիւնը աւրուած համարուելու չէր։

### Է. Քրիստոնէից համար առանձին դաշինք:

Խաղաղութեան այն դաշինքին հետ զոր վերը տեսանք, առանձին միաբանութիւն մ'ալ եղաւ, որ պարսիկ քրիստոնէից վիճակին ու անոնց հանդէպ ինչ վարմունք ցոյց տալու վրայ էր[1]։

Պարսկաստանի մէջ քրիստոնէից թիւը քիչ չէր. ասոնց բնակավայրն էր Պարսկահայաստանէն զատ, գլխաւորաբար ասորա-արամէական երկրամասերու մէջ եւ Սուսիանա, ըստ այսմ պետութեան մայրաքաղաքներու մօտերը։ Ասոնց կացութիւնը շատ խեղճ էր. ժամանակին ինքնակալին առաւել կամ նուազ հանդուրժողութենէն կախուած էր։ Հաւատքով, աշխարհայեցողութեամբ եւ բարքով Մազդեզականներէն բոլորովին անջատուած՝ ոչ միայն ժողովրդեան հակակրութենէն կը կրէին, այլ եկամուտ (Proselyt) վաստըկելու իրենց ջանքերով — որ պարսկական օրինաց բոլորովին հակառակ էր — այլ նաեւ իրենց վարմանց մէջ ցոյց տուած ան-

1 Պարսկաստան գտնուող քրիստոնեաներուն վրայ. Spiegel, Eran. Altertümer, 3, 719 ff.

խոհեմութեամբ եւ անհանդուրժողութեամբ տիրող մոլեռանդ մոգերու դասին ատելութիւնն ու հալածանքը կը գրգռէին[1]։ Արքային արքաներուն համար ծանրակշիռ քաղաքական շարժառիթ մ'ալ կար։ Քրիստոնէութիւնը հռովմէական պետութեան մէջ տէրութեան օրէնք ճանչցուելէն ի վեր, պարսիկ քրիստոնեաները Հռոմի կամ Բիւզանդիոնի իշխողները իրենց բնական պաշտպաններն սկսան համարել եւ ինչպէս որ եկեղեցական խնդիրներու մէջ անոնցմէ կախուած կը նկատէին իրենք զիրենք, այսպէս ալ իրենց նեղութեան ատեն կայսերական կառավարութեան կը դիմէին եւ անկէ կը խնդրէին ու կը սպասէին գործնական օգնութիւն։ Անդին Սասանեանք, որոնք իրենց աւատ տէրութիւններուն Հայաստանի, Վրաստանի եւ Աղուանքի քրիստոնեայ ըլլալը մեծ վտանգ կը համարէին իրենց հոն ունեցած ազդեցութեան, առանց հիման չէր, որ իրենց բուն քրիստոնեայ հպատակներուն դէմ, ասոնց իրենց արեւմտեան դրացւոյն հանդէպ ցոյց տուած միտութեան պատճառաւ, մեծ անվստահութիւն սկսան ունենալ եւ զասոնք՝ մանաւանդ կայսերաց հետ գժտութեանց ժամանակ վտանգաւոր մատնիչներ կը նկատէին։ Ինչ ինչ կայսրներու — այսպէս արդէն Կոստանդիանոս Մեծին, եթէ եկեղեցական պատմիչներու առ Շապուհ Բ. յիշա-

[1] Թէոդորետոս, Եկեղ. Պատմ. 5. 39. Աբդաս եպիսկոպոսին ձեռքով ատրուշանի մը կործանումը կը պատմէ. Թէոփանէս 82։

տակած թուղթը վաւերական է[1] — քրիստոնէական կրօնին հանդէպ հանդուրժողութիւն ցոյց տրուելու համար միջամտութեան փորձը արքայից արքաներէն գէշ մօքի կը տարուէր, ոչ նուազ՝ երբ կայսրները հռովմէական պետութեան մէջ ապաւէն գտած քրիստոնեայ փախստականները Պարսից մատնել չէին յօժարեր[2]։ Այս պարագաները իբր պատճառներ յառաջ բերին այն խիստ հալածանքները, զորոնք հինգերորդ դարու մէջ Պարսկաստանի քրիստոնեաները կրեցին[3], ինչպէս նաեւ հաւատոյ այն արիւնահեղ պատերազմները, որոնց ասպարէզն եղաւ պարսիկ պետութեան կցուած Պարսկահայաստանը, որպէս զի քրիստոնէութիւնը ջնջելով՝ գոնէ այս երկիրը վերստին հին իրանեան կրօնին դարձընել կարելի ըլլար[4]։

Երբ յետոյ հինգերորդ դարուն վերջերը պարսիկ քրիստոնեաներուն մեծ մասը՝ եկեղեցիէն Նեստորի իբր հերետիկոսական մերժուած վարդապետութիւնն ընդունեցաւ եւ ուղղափառներէն բաժնուած առանձին եկեղեցի մը կազմեց, ասով Բիւզանդիոնէն յառաջ եկած բաժանումը արքայից արքաներուն սրտին ուզածն էր։ Հայ

---

[1] Այս կարծեցեալ նամակը նախ Եւսեբիոս կը յիշատակէ, վարք Կոստ. Դ. 9։ Յետոյ Թէոդորետ. Եկեղ. Պատմ. Բ. 25 եւ Սոզոմենոս, Եկեղ. Պատմ. Բ. 15։

[2] Սոկրատէս. Եկեղ. Պատմ. Է. 18. Թէոդորետ. Եկեղ. Պատմ. Ե. 39, Թէոփանէս 85.

[3] Հապուհ Բ.ի, Յազկերտ Ա.ի եւ Վռամ Ե.ի ատեն հալածանքներուն համար հմտ. Նէօլդեկէ, Տաբարի 68. 75. 98.

[4] Spiegel, Eran. Altertümer 3, 723 ff.

եկեղեցւոյ եւ Յուստինիանէն նպաստաւորուած Միաբնեաներուն հակառակ, Նեստորականները պարսիկ իշխանականներուն բարեացակամութիւնը կը վայլէին եւ չենք լսեր թէ բուն Պարսկաստանի մէջ Կաւատի եւ Խոսրովի կառավարութեան ժամանակ քրիստոնէից դէմ հալածանք եղած ըլլայ: Խոսրով ինքնին մոլեռանդ մազդեզական չէր եւ ոչ ալ քրիստոնէից դէմ խիստ հակակրութեամբ տոգորուած[1]: Թոյլ տուաւ որ իւր կիներէն մին եւ ասկէ ունեցած որդին Անուշազատ քրիստոնեայ կրօնքը դաւանին. եւ երբ քրիստոնեաները այն ապստամբութեան մասնակցեցան, զոր ասիկա իւր հօրը դէմ հանած էր, խիստ վրէժ չլուծեց[2]:

Այս էր իրաց վիճակը այն խաղաղութեան ժողովին ժամանակ, որուն վրայ կը խօսինք: Այս ժողովին մէջ էր, որ լիազօրները քրիստոնէից խնդիրն ալ շօշափեցին եւ հոս յառաջ եկաւ այն միաբանութիւնը, որով պարսիկ քրիստոնեաներուն իրենց աղօթատեղիներուն շինութիւնը եւ աստուածային պաշտաման անարգել կատարումը ապահովուեցաւ եւ թոյլ տրուեցաւ, իրենց մեռելները ըստ քրիստոնէական բարոյից թաղելու, թոյլտուութիւն մը, որ զրադաշտական կրօնը դաւանողներուն մեծապէս գայթակղեցուցիչ էր[3]: Ասկէ զատ ամենեւին

---

[1] Նէօլդեկէ, Տաբարի 161. Rawlinson, Seventh Monarchy. 459.

[2] Նէօլդեկէ, Տաբարի 467 ff.

[3] Պարսկական յուղարկաւորութեանց ծանօթ սովորութիւնները Ագաթիաս Բ. 22.23 (113–115) անշուշտ

*բռնադատուելու չէին այնուհետեւ մազդայական արարողութեանց մասնակցելու եւ ոչ ալ պարսիկ աստուածներու պաշտօն մատուցանելու։ Միւս կողմանէ բացայայտ արգելուեցաւ անոնց, Մազդայի պաշտօնատարները, μαγούς հաւատքէ հանել եւ քրիստոնեայ դարձընել. այս բանս ըստ պարսիկ իրաւանց իբր մահուան արժանի ոճիր կը պատժուէր*[1]*։*

*Պէտք չէ տարակուսիլ, որ Յուստիանէն է այս միաբանութեան դրդումը. սակայն պայծառ չեն այն շարժառիթները, որ զինքը դրդած են այս թոյլտուութիւնները ստանալ Խոսրովէն։ Եթէ ըսենք, որ կայսեր ունայնամտութիւնը կը շողոքորթէր իւր ծերութեան մէջ իսկ իւր պետութեան սահմանէն դուրս իբր քրիստոնէից տէր եւ պաշտպան կանգնիլ, կամ թէ ըսենք միտքն էր Նեստորականները իրենց աղանդէն ճշմարիտ հաւատքի դարձընել, սակայն եւ այնպէս ասոնք իր այս կերպ վարուելուն իբր որոշիչ պատճառ չեն կրնար եղած ըլլալ։ Աւելի քաղաքական կշռադատութիւններ զինքը առ այս դրդած ըլլալու են։ Այժմ դրած խաղաղութեան դաշինքին մէջ պարտաւորած էր ինքզինքը բոլոր Պարսկաստանէն փախչողներուն ընդունելութիւնը զլանալ եւ զանոնք պարսիկ կառավարութեան յանձնել։ Ճիշդ ալ քրիստոնեայ հաւատակիցներն էին, որ մինչեւ ցայժմ*

---

պարսիկ աղբիւրներու համաձայն մանրամասն կը ստորագրէ. Հմմտ. Պրոկ. ՊՊ. Ա. 12 (57)։

[1] Մենանդր 213.

Հռովմէական պետութեան մէջ պատրաստակամ ընդունելութիւն գտած էին։ Ըստ այսմ եթէ այսուհետեւ կայսրը կը բաղձար անոնց պաշտպանութիւն ընծայելով դաշանց որոշմանց չհակառակիլ, լաւ էր իրեն՝ քրիստոնէից համար ձեռք բերած զիջողութիւններով իւր կրօնական խղճին եւ յանձն առած դաշանց պարտաւորութիւններու մէջ յառաջ գալի ամէն գժտութեան առջեւն առնուլ։

Աւելի դիւրին է մեկնել, թէ ինչպէս Խոսրով կայսեր բաղձանքներուն հաւանութիւն տուաւ։ Ստոյգ է շատ դէշ կու գար իրեն իւր քրիստոնեայ հպատակներուն համար հանդուրժողութեան հրովարտակ հանել. բայց դժուարին չէր այն զիջողութիւններուն՝ որոնց վրայ միաբանութիւն գոյացած էր, հաստատութիւն տալ, վասն զի արդէն իւր պետութեան մէջ այս զիջողութիւնները կ'իրագործուէին։ Այս միաբանութիւնը խաղաղութեան դաշանց մէջ անոր համար չառնուեցաւ, վասն զի Պարկաստանի ներքին խնդիր մըն էր եւ պարսիկ պատգամաւորները իրենց ազգային զգածման չէին տար, որ քրիստոնէից խնդիրը իբր պայման խաղաղութեան դաշինքին մէջ մտնէր։ Ճիշդ չէ կարծելը, թէ այս միաբանութիւնը լոկ արքայից արքային կողմանէ հաճոյակատարութեան գործողութիւն ըլլայ. վասն զի ἐνομίσθη բացատրութիւնը յայտնի կը ցուցընէ, որ հոս հասկընալու չէ միակողմանի, յետսկոչելի զիջողութիւն մը, այլ կապող խոստում մը եւ դաշնադիրներուն

գիտաւորութիւնը այն եղած է, կայսեր՝ տալ իրաւունք այս խոստման գործադրութեան հանդէպ, իսկ Թագաւորին՝ պարտք մը դնել զայն գործադրելու[1]։

Պարսիկ քրիստոնեաներուն համար սկսաւ այսպէսով հանդուրժողութեան ժամանակ մը, զոր վայելել կրցաւ Խոսրովէն վերջն ալ երկայն ատեն։ Թէպէտ իր որդին, Որմիզդ (574—590) Արեւելեան հռովմէական պետութեան հետ սաստիկ կռիւ ունէր, սակայն եւ այնպէս իր քրիստոնեայ հպատակներուն շնորհք ըրաւ. եւ երբ անգամ մը Պարսից մոգերը զանոնք կասկածելի ընելու սկսան ջանալ, կ՚ըսուի թէ կարճ կապած ու խիստ խօսքերով մերժած ըլլայ զանոնք[2]։ Իսկ իր յաջորդին Խոսրով Բ.ի վրայ (590—628) կը պատմուի, որ քրիստոնէից հանդէպ մասնաւոր գութ մ՚ունէր, վասն զի իր գահը Մաւրիկ կայսեր պարտական էր եւ իր սիրելի կինը Շիրին եռանդուն քրիստոնեայ մըն էր[3]։ Իր հաւուն քրիստոնէից ըրած

---

1 Խնդիր ընել չարժեր թէ դաշանց մէջ περὶ τῶν ἐν Περσίδι Χριστιανῶν խօսքով միայն բուն Պարսկաստանը կը հասկցուի դուրս հանելով պարսկական Հայաստանը։ Յամենայն դէպս Պարսիկները չեն խիթացած Պարսկահայաստանի մէջ քրիստոնէից դէմ մաքառելու։

2 Կարդալու է Տաբարիի (Նէօլտեկէ) մէջ պատասխանը. Ինչպէս որ մեր գահը չի կրնար իր յառաջակողման նեցուկներուն վրայ կենալ առանց երկու յետսակողմաններուն, այսպէս ալ մեր տէրութիւնը չի կրնար կանգուն ու ապահով ըլլալ, եթէ քրիստոնեաները մեզի դէմ գրգռենք։

3 Յոյները զայն Σίρα, Σείρεμ կը կոչեն։

շնորհքները հաստատած է կ'ըսուի[1] եւ այս ամէն բանով իր Պարսիկներուն առջեւ կասկածի ենթարկուած է, թէ ինքնին քրիստոնեայ դարձած ըլլայ, որ ի հարկէ անհիմն է[2]։

Իբր բնական հետեւութիւն ընդունուած է, որ նոյն հանդուրժողութիւնը, ինչպէս Պարսկաստանի քրիստոնեաներուն, այնպէս ալ Արեւելեան հռովմէական պետութեան մէջ ապրող Մազդեզանց ցոյց տրուած ըլլալու է[3]։ Թէ այսպիսիներ տակաւին հինգերորդ դարու մէջ Փոքր Ասիայի զանազան կողմերը կային, իրօք ալ Պրիսկոս պատմագրին հատակոտորի մը մէջ կը յիշատակուի։ Կը պատմէ, որ Պերոզ թագաւորը իր պատգամաւորներուն ձեռքով իր դաւանակիցներուն հանդէպ ցոյց տրուած կրօնական սեղմումներուն եւ մանաւանդ կրակապաշտութեան արգելքին պատճառաւ, Լեւոն Ա. կայսեր առջեւ գանգատած է, իսկ կայսրը այս գանգատն իբրեւ անհիմն մերժած է[4]։ Յուստինիանոսի ժամանակ ալ կ'ըսուի, թէ սահմանագաւառներու մէջ առանձնակի Պարսիկներ բնակած ըլլան։ Բայց անհաւանական է, որ անոնց յայտնապէս կրօնական հանդուրժողութիւն ապահովուած ըլլայ։ Թէպէտ Տաբարի կը յիշատակէ այն լուրը, իբր թէ Խոսրով Յուստինիանու հետ խաղաղութեան դաշինքը դնելու համար բանակցած ատեն,

---

1 Տաբարի 287. 288 զայս կը հաստատէ։

2 Առ. այս ակնարկութիւն մը առ Ֆիրդուսիի 7. 144։

3 Այսպէս Նէօլդեկէ, Տաբարի 288. ծնթ. 1։

4 Պրիսկոս Հատ. 13։

պետներուն հաւանութիւնը յայտնապէս վերապահած էին[1]։ Ըստ այսմ ծրագրուած պայմանները Պետրոս՝ կայսեր, իսկ Զինկ՝ արքայից արքային խաւրեցին հաւանութիւն տրուելու եւ մինչեւ նոյնին գալը բանակցութիւնները ընդհատեցին[2]։

Հաւանութեան արտայայտուիլը հանդիսական արձանագրութեան ձեւով ըլլալու էր. պարսկականը Խոսրովէն Յուստինիանու ուղղուած թուղթ մըն էր, զոր Մենանդր հաւատարիմ թարգմանութեամբ յառաջ կը բերէ, որուն սկիզբը ուրիշ տեղ արդէն յիշատակեցինք։ Թագաւորը կայսեր շնորհակալութիւն կը յայտնէ, որ խաղաղութեան դաշինքը դնելու սկիզբ ըրաւ, կը յիշատակէ երկակողմանի պատգամաւորներուն լիազօրութիւնը “բանակցելու եւ դաշնադիր ըլլալու„, կը յիշատակէ, որ միասին բանակցութիւն կատարելով խաղաղութիւն ըրած են յիսուն տարուան համար, խմբագրած եւ կնքած եւ կը վերջացընէ այս յայտարարութեամբ.

“Այլ մեք կամիմք ընդ խաղաղութեան դաշինս, որպէս եւ կնքեցան ի մէջ Զիկայ եւ կոչեցելոյն վերակացու Հոռոմոց Իւսեբեաւ հանդերձ, հաճեալ հաւանել եւ զպայմանս նորին ունել հաստատուն։„

Յուստինիանու հաւանութիւնը Սակրա անուանեալով (forma, θεῖον τύπος) այսինքն

---

1 Մենանդր 209։

2 Մենանդր անդ։

ուղղակի կայսերական դահլիճէն մասնաւոր ձեւով յայտնուած կամաց արտայայտութեամբ տրուեցաւ. եւ բովանդակութեան կողմանէ պարսկականին կը համապատասխանէր։ Բայց թէ աս ալ անոր պէս Խոսրովին ուղղուեցաւ իբր նամակ թէ իբր յանձնագիր հռովմայեցի լիազօրներուն տրուեցաւ, մեր աղբիւրներէն չ'իմացուիր։

Որովհետեւ այս հաւանութեան արձանագիրները հրատարակուած ատեն խաղաղութեան դաշինքը տակաւին կնքուած լմնցած չէր, այլ միայն առժամանակեայ ստուերագիծը կար մէջտեղ, այս պատճառաւ ազգային իրաւական մտքով վաւերացում չեն կրնար համարուիլ, այլ աւելի այն նկարագիրն ունէին, որ իշխանութիւն տրուած էր, որ միաբանուած եւ ընդունուած պայմաններուն վրայ դաշինքը կնքուի։ Ասոր վրայ յեցած՝ լիազօրներէն գրուած եւ ի գործ դրուած խաղաղութեան դաշինքը ա՛լ երկու ինքնակալներուն հաւանութեան պէտք չունէր. կերպապէս կնքուելով առանց այլեւայլի իրաւական ազդեցութիւնը կը ստանար եւ տէրութեան գլուխներուն եւ անոնց պետութեան համար կապող ոյժ կ'ունենար։ Արդէն նոյն ժամանակ տիրող ազգային իրաւական սովորութեան համեմատ եկած հասած հաւանութեան արձանագիրները լիազօրներէն՝ փոփոխակի բնագրով, փոխանակուեցան։

Ասոր վրայ կարելի էր այլ եւս խաղաղութեան պայմանաւորման գործադրութեան քայլն առնուլ։ Այս գործողութեան կերպը բաւական

կնճռոտ էր նկատի ունենալով իրեն կարեւորութիւնը եւ երկու դաշնագիրներուն լեզուական տարբերութիւնը. այս բանս միեւնոյն ժամանակ հետաքրքրական գաղափար մը կու տայ նոյն ժամանակի միջազգային յիշատակագիտութեան վրայ։

Նախ եւ յառաջ դաշինքը երկու լիազօրներէն ալ՝ իրենց առընթերակացներուն եւ թարգմաններուն գործակցութեամբ իրենց բուն լեզուով գրուեցաւ, ըստ այսմ Պետրոսէն եւ Եւսեբիոսէն յունարէն, Զիկէն եւ Սուրէնէն պարսիկ լեզուով։ Յետոյ յունարէն բնագիրը պարսկերէնի, իսկ պարսկերէնն ալ յունարէնի թարգմանուեցաւ, թարգմանութիւնները խնամքով իրարու հետ համեմատուելով՝ թէ բառի եւ թէ՛ իմաստի կողմանէ համաձայնութեան բերուեցան[1]։ Այս երկու օրինակները (δύω βίβλια) ըստ իմիք խաղաղութեան դաշանց բնագիրը կը կազմէին։ Մասնաւոր վաւերացման կ'երեւայ թէ հարկ չէ տեսնուած. ոչ հռովմէական եւ ոչ պարսիկ իրաւանց համեմատ հրապարակական, պետական կամ ազգային իրաւական արձանագրութեանց համար դաշնագիրներուն ստորագրութեանց պէտք կար. իսկ թէ կնիք կոխուած չէ յայտնի է Մենանդրէն[2]. կրնայ ըլլալ, որ երկակողմանի թարգմանները թարգմանութեան ճշդութեան ու համաձայնութեան վկայած ըլլան որեւէ դիտողութեամբ։

1 Մենանդր 211, 212։
2 Անդ 214։

Այս երկու բնագրական օրինակներէն ալ առ այս ընտրուած պաշտօնեաներ՝ մէյ մէկ մասնաւոր պատճէն ալ կազմեցին, որոնց համաձայնութիւնը նոյնպէս համեմատելով վերաստուգուեցան։ Այս երկու ձեռնագիր պատճէնները՝ մին յունարէն, միւսը պարսկերէն, սահմանուած էին ըստ իմիք խաղաղութեան դաշանց իբր գլխաւոր օրինակներ (τὰ κυριώτερα) ծառայելու, մինչդեռ նախայիշատակեալ նախագաղափարները իբր մեր իմաստով երկրորդական օրինակներ կը ներկայացընէին։

Երկու գլխաւոր օրինակներն ալ այնուհետեւ ծալլուելով՝ ըստ պարսիկ սովորութեան ժապաւինուեցան եւ դրսէն լիազօրներուն եւ իբր արձանագրութեան վկայ հրաւիրուած տասուերկու (վեց յոյն եւ վեց պարսիկ) թարգմաններուն կնքովը գոցուեցան։ Ի հարկէ իւրաքանչիւր կնիքի կոխուածքին հետ կնիքի տիրոջ անունն ալ եղած ըլլալու էր։ Այս գործողութեան յաջորդեց խաղաղութեան արձանագրութեանց յանձնումն ու փոփոխումը. Պետրոս պարսիկ պատգամաւորին յանձնեց յունարէն օրինակը, իսկ պարսիկը փոխադարձաբար անոր տուաւ պարսկական վաւերագիրը։ Երկու երկրորդական օրինակները մասնակիցներուն յիշողութեան օգնելու եւ անշուշտ երկու գլխաւոր օրինակները անդադար չքանալու համար էին։ Այս պատճառաւ ասոնք չփոխանակուեցան. երկու դաշնագիրներէն իւրաքանչիւրն իր լեզուով խմբագրուած եւ իրեն համար հասկընալի եղող

օրինակը, Հռովմայեցին յունարէն, իսկ Պարսիկը պարսկական բնագիրը իւր քով պահեց։

Արդէն փոխանակուած հաւանութեան արտայայտութիւնները խաղաղութեան դաշինքին յարակից մասը կը կազմէին. դաշինքը կնքուելէն վերջը երեք տարիներու համար հատուցուելի կանխավճարներու նկատմամբ Յուստինիանոսի վերը (էջ 77—80) յիշատակուած ապահովութեան մուրհակը պարսիկ պատգամաւորին տրուած ըլլալու է։

Այն ձեւին վրայ, յորում պարսիկ քրիստոնեաներուն նկատմամբ առանձնակի միաբանուեցաւ, բան մը չէ ըսուած. բայց կրնայ ընդունուիլ, թէ այս ձեւն ալ խաղաղութեան դաշանց հանգունակ եղած ըլլալու է։ Ասով վերջապէս յառաջ եկաւ Արեւելեան Հռովմայ եւ Պարսկաստանի միջեւ խաղաղութիւնը քսանամեայ պատերազմէ վերջը։ 362 տարւոյ աշնան վերջերն էր։

Յուստինիան արդիւնքներէն գոհ ըլլալու էր։ Խաղաղութիւնը բերաւ իրեն Լազիկայի տիրապետութիւնը, որուն համար երկար կռիւներ եղած էին, Կաւկասեան անցքերուն հոգէն ազատում, Դարասի ամրութեան մնալը եւ վերջապէս թէպէտ ոչ շատ հաստատուն ապահովացումը պարսիկ արաբական ցեղերու յարձակմանց դէմ։ Ասոր դիմաց իբր պարտաւորութիւն կեցած էին Պարսից վճարելի մեծագումար ամավճարները եւ գլխաւորաբար նախ եօթը եւ ապա յաջորդ երեք տարիներուն համար այն

կանխավճարները, որոնք մեծապէս զգալի էին, պետութեան նոյն ժամանակուան խեղճ դրամական վիճակին պատճառաւ։ Այսու հանդերձ առանց համագումարը 532ի մշտնջենաւոր կոչուած խաղաղութեան համար վճարուելիքին կէսն իսկ չէր ըներ։ Բայց թէ պետութիւնը Արեւելքցւոց եւ իւր իսկ հպատակներուն աչքին առջեւ իբր Պարսից հարկատու կընար երեւալ, ստիպուած էին յանձնառու ըլլալ. այս բանիս կայսերական կառավարութիւնը արգէննման դէպքերու մէջ ստիպուած էր համակերպիլ։

Այսու ամենայնիւ ձեռք բերուած առաւելութիւնները այս դրամական զոհին կը զուգակշռուէին։ Խոսրով ալ Յուստինիանու ձեռք բերած արդեանց վրայ նախանձելու պատճառ չունէր։ Իրեն համար մեծ ծանրակշռութիւն ունէր այն, որ իւր պետութեան արեւմտեան սահմանէն երկիւղ չէր ունենար, որով իշխանութիւնը անարգել ուրիշ կողմեր կրնար ծաւալել։

Խաղաղութեան պայմանադրութիւնները չյրուած՝ կայսրը հայթայթած էր հարկաւոր դրամը եւ Պարսս խաւրած, որպէս զի անմիջապէս ընդունելի դաշանց պայմաններուն գոհացում տրուի։ Այսպէսով կրցաւ Պետրոս խաղաղութեան դաշինքը գրուելէն անմիջապէս վերջը Ջիկի եւ նոյն միջոցին երեւցող պարսիկ երեւմանից պաշտօնեաներուն առաջին եօթը տարիներուն համար 210.000 ոսկեդրամ 3500 լիտր

ծանրութեամբ կշռել եւ տալ[1]։ Որովհետեւ Պարսից Լազիկայի մէջ գրաւած տեղերուն թողուիլն ալ առանց դժուարութեաց ի գլուխ ելաւ, ասով խաղաղութեան պայմանները լրացուեցան կրնայ ըսուիլ, որչափ որ ի սկզբան նկատողութեան կրնային առնուիլ[2]։

---

## ՀԵՏԱԳԱՅ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ․

Խաղաղութեան դաշինքը Խոսրովին արքունեաց մէջ մասնաւոր հետեւորդ արդիւնք մ՚ունեցաւ։ Դարասի խորհրդեան միջոցին երկու պետութեանց մէջ տատանող վիճական խնդիրներուն թէեւ գոհացուցիչ լուծում տալ յաջողեցաւ, սակայն քանի մը կէտեր մնացած էին, որոնց վրայ կարելի չեղաւ միաբանիլ։

Լազիկայի Հռովմայեցւոց տրուելու հետ կապուած էր Սուանացւոց երկրին գրաւումը։ Լազիկայի հիւսիսային կողմը Կաւկասի զառիթափին վրայ փոքրիկ, կէս վայրենի ցեղ մը կը նստէր Սուանացի կոչուած[3]։ Վերջին հռովմէական-պարսկական պատերազմի ատեն Պարսիկները անոնց երկրին տիրած էին, որ այնուհետեւ անոնց գերիշխանութեան ենթարկուած մնաց։ Հռովմայեցիք խաղաղութեան բանակցութեանց ժամանակ կը հաստատէին, թէ Սուանացիք ի հնուց Լազերէն կախում ունէին եւ այս պատ-

1 Իբր 3,197.500 մարկ։
2 Մենանդր Հատւ. 13 (218)։
3 Սուանիայի վրայ տ. Պրոկ. ԳՊ. Դ. 2 (467)։

ճառաւ. ասոնց հետ հռովմէական պետութեան
ենթարկուած էին եւ ըստ այսմ Լազիկայի ետ
տրուիլը Սուանայի թողուիլն ալ կը նշանակէր.
իսկ Պարսիկները կը պնդէին, որ Սուանացիք
անկախ ժողովուրդ մնացած եւ ազատակամ՝
Պարսից հետ միացած էին։ Այս խնդրոյն վրայ
չկարենալով միաբանիլ, անոր յանգեցան, որ
խաղաղութեան դաշանց մէջ այս նիւթին տեղը
բաց ձգեն եւ Խոսրովին վերապահեն նորոգ
բանակցութիւն մը կատարել եւ Զիկ երդմամբ
ինքզինքը պարտաւորեց կրցածին չափ Հռով-
մէական պատգամաւորին նեցուկ ըլլալ[1]։ Թէպէտ
խնդրի տակ եղող երկիրը ոչ մեծ տարածու-
թիւն մ'ունէր, ոչ ալ մասնաւոր արժէք մը,
սակայն Հռովմայեցւոց համար անտարբեր չէր,
որ ճիշդ իրենց սահմանին կից եղող Սուանիա
Պարսից ձեռքը մնայ եւ նոր ձեռք բերուած Լա-
զեան երկրին համար մշտական սպառնալիք
մ'ըլլայ[2]։

Սուանիայի վրայ բանակցութիւնը յառաջ տանելու համար Պետրոս 563ի սկիզբը արքայէն արքային արքունիքը գնաց[3]։ Հոս երկուքին մէջ խօսքի մենամարտութիւն մը սկսաւ, զոր Մենանդր կը յիշատակէ Հռովմէական դեսպանին

---

[1] Բանակցութեանց վրայ Մենանդր 211. 212։

[2] Այս բանս Մենանդր մասնաւորապէս կը շեշտէ, Հատ. 15 (220)։

[3] Βιθαρυαΐς ուր կը գտնուէր բանակը. տեղ չէ այլ Բեթ-Արամայէ գաւառը այսինքն Քարկուկ։ Հմմտ. Նէօլդեկէ, Տար. 15. 245։

նշանակածին համաձայն. սակայն այս վիճաբանութեան մէջ ասիկա հակառակ իւր դիւանագիտական յաջողակութեան եւ Խոսրովի երեւութական բարեացակամութեան պարտութիւն կրեց եւ չկրցաւ բան մը ձեռք բերել: Իւր գլխաւոր ապացոյցը, զոր վաւերագիրներով հաստատելու կը ջանար, իբր թէ Սուանացիք Թէոդոս կայսեր ատեն Լազերէն ընդունած են իրենց արքայիկները, որոնք կայսեր կողմէն հաստատուած են, ըստ այսմ Սուանիա Լազիկայի յարակից մաս մըն է, որով խաղաղութեան դաշանց համաձայն՝ Լազիկայի հետ թողուած նկատելի է, Թագաւորը անով ջրեց, որ իւր յիշատակարանաց նայելով՝ կախման այսպիսի յարաբերութիւն մը գոյութիւն ունեցած չէ եւ թէ Սուանացիք իրեն կամաւոր կերպով հպատակած են: Պարապ տեղ Պետրոս անոր վեհանձնութեան դիմեց: Վերջապէս Թագաւորը անշուշտ ոչ ծանրութեամբ առեալ առաջարկութիւնն ըրաւ, Սուանացւոց իսկ որոշել տալ, թէ աւելի յօժարակամութեամբ հռովմէական պետութեան վերաբերիլ կ'ուզէին (արդի ժողովրդեան քուէարկութիւնը ակամայ կը յիշէ մարդ)[1]: Այս բանս Պետրոսին մտահոգութիւն պատճառեց, վասն զի լաւ գիտէր թէ անոնք հռովմայեցի պաշտօնեաներուն իրենց ըրած անիրաւութեանց համար Պարսից տակ մտած էին. Խոսրով այս առ երեւոյթ ըրած առաջարկութիւնը անմիջապէս թող տու-

[1] Մենանդր 214—217:

ու[1]։ Այսպէսով բանակցութիւնները խզուեցան եւ ամէնայն ինչ իր հին կերպարանքն առաւ[2]։ Բանակցութիւններուն դարձեալ սկսիլը Յուստինիանու յաջորդին տեւն աւելի յաջող արդիւնք չտուին։

Ուրիշ խնդիր մ'ալ շօշափուեցաւ այս բանակցութեանց մէջ։ Նպաստ եւ ռոճիկ — որոնցմով Յուստինիան իւր պետութիւնը գնել սովոր էր — ընդունողներուն մէջ էր նաեւ այն պարսիկ աւարը, Հիրայի Մունտիր իշխանը։ Իւր որդին ու յաջորդը Ամր (Ἄμβρος τοῦ Ἀλαμουνδάρου) անկէ կը հետեւցընէր տարեկան եւ ռոճիկի մը՝ 100 լիտր ոսկւոյ շարունակարար վճարքի մը պահանջը եւ որովհետեւ խաղաղութեան դաշանց մէջ իւր պահանջը նկատի չէր առնուած[3], իւր գերագոյն տիրոջ առջեւ բողոք ըրած էր։ Իսկ իրեն դէմ Պետրոս կը պնդէր, որ կանոնաւորապէս վճարուած ռոճիկներու վրայ չէր խնդիրը, այլ պարզապէս առթիւ մը իրարու հետ փոխանակուած պարգեւներու վրայ, որոնցմէ իրաւունքի պահանջ չի կրնար ելլել, բայց միանգամայն հասկցընել տուաւ, որ կայսեր Արաբացւոց հետ ունեցած յարաբերութիւնը շատ լաւ չերեւար, այնինչ թէ Մունտիր իւր աւատական պարտաց հակառակ, ինքզինքը տրամադրած է Հռովմայեցւոց դէմ

---

1 Ընդ։
2 Մենանդր Հատ. 15 (218)։
3 Մենանդր 221։

պատերազմի պարագային չէզոք մնալ[1]: Խոսրով անշուշտ գիտնալը չուզեց իրեն միջամուխ ըլլալ, այլ բաւականացաւ պատգամահանգոյն երկմիտ վճռով մը, որ յամենայն դէպս կը հակըցըներ Արաբացւոյն պահանջումը յանձն առնուլ[2]: Այսու հանդերձ Յուստինիան լաւ համարեցաւ իւր իսկ շահուն համար վճարումը շարունակել[3]:

Պետրոս, որ Խոսրովու հետ այս բանակցութեանց միջոցին բախտ չէր ունեցած, ասոր վրայ Բիւզանդիոն գնաց կայսեր տեղեկութիւն տալու[4]:

---

## ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ Կ'ԱՒՐՈՒԻ. ՆՈՐ ՊԱՏԵՐԱԶՄ. ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԴԱՐՁԵԱԼ ԿԸ ՍԿՍԻ 572—591.

Ինչպէս 532ի մշտնջենաւոր խաղաղութիւնը՝ այսպէս ալ յիսնամեայ խաղաղութիւնը տարաժամ վախճան ունեցաւ. հազիւ տասը տարի անցած էր, ահա դաշինքը ջնջուեցաւ: Ստոյգ է, քանի որ Յուստինիանոս ողջ էր, Պարսից հետ յարաբերութիւնները անփոփոխ մնացին. բայց իւր յաջորդը Յուստինոս Փոքր[5], շեղեցաւ այն աւանդութիւններէն, որոնց հետեւած էր իւր

1 Անդ 216:
2 Անդ յ. տ.:
3 Մենանդրէն կը հետեւի:
4 Մենանդր: Պետրոս քիչ ետքը մեռաւ:
5 Թագաւորեց 14 Նոյ. 565 մինչեւ 5 Հոկտ. 578:

մօրեղբայրը արտաքին քաղաքականութեան մէջ իր երկար կառավարութեան ժամանակ։ Հռովմէական ինքնակալի եւ բասիլեւսի ինքնագիտակցութեամբ լեցուած՝ անտանելի ամօթ եւ նախատինք կը համարէր, որ բարբարոս ազգերէ խաղաղութիւնը գնուէր պարգեւներով, որով այսպիսի վճարումներ շարունակելու ամէն պահանջ մերժեց։ Իւր ամբարտաւան բնութիւնը չէր թողուր, որ պետութեան ոյժն ու զօրութիւնը ճանչնայ. կառավարութեան վերջին չորս տարիները վրան եկած ոգեկան հիւանդութիւնն ալ կ'երեւայ թէ իր գործողութիւններուն վրայ ազդած ըլլայ։

Թագաւորութեան սկիզբը անմիջապէս ձախողութիւն մ'ունեցաւ Պարսից հանդէպ։ Իւր գահակալութեան սովորական ծանուցումը Տիզբոնի արքունիքը տանող դեսպանին[1] գործքն էր՝ Խոսրովի միտքն իմանալ անորոշ մնացած Սուանեան խնդրին վրայօք կամ յարաբերաբար չափաւոր գնի մը փոխարէն այս երկրին ստացումը առաջարկել։ Սակայն իւր այս պաշտօնը շատ յաջողակութեամբ չկատարեց եւ թագաւորը անոր անխորհուրդ քայլն առնուլ տուաւ, առանց կայսեր գիտութեան ու կամաց՝ Սուանացւոց իշխանին հետ ուղղակի յարաբերութիւն հաստատելու, այն յուսով, որ զայն ազատակամ կերպով Հռովմայ հետ կապէ։ Դեսպանը իշխանին բացորոշ մերժումն ընդունեցաւ, ինչպէս որ

---

1 Մենանդր Հատկ. 15 (220) զայն Յովհաննէս Կոմենտիոլոս կ'անուանէ։

խոսքով կարգադրած էր արդէն, իսկ կայսրը այս ինքնագլուխ զանցառութեան համար խիստ կշտամբութիւն մը[1]։

Ասոր հետեւութիւնն՝ այն եղաւ, որ երբ երկրորդ տարին պարսիկ դեսպանութիւն մը Բիւզանդիոն եկաւ, արտաքոյ կարգի գէշ ընդունելութիւն եղաւ անոր։ Ստոյգ է որ Մեբոդ[2] դեսպանն ալ կատարեալ պարսկական ամբարտաւանութիւն մը ցոյց տուաւ եւ կայսրը վիրաւորեց այնու, որ ինքզինքը Հիրայի շէյխին պատգամաւորներուն իբր բերան երեւցընելով՝ պահանջեց, որ շարունակուին այն տարեվճարները տրուիլ, որոնց հաւանութիւն տուած էր Յուստինիանոս։ Կայսրը, որ անոր հետ Սուանիայի վրայ խօսելու բնաւ պէտք չէր զգար, պատգամաւորութեան ընդունելութիւնն ու նոյնին պահանջը բացէ ի բաց մերժեց։ “Դուն ոչ թէ իբր պատգամաւոր, այլ դատաւոր եկած կ'երեւաս„, գոչեց անոր երեսն ի վեր[3]. եւ երբ Մեբոդ սկսաւ դարձեալ զայն թախանձել, այս խօսքերով զայն կշտամբեց. “Դուն կը մոռնաս, թէ հռովմայեցի կայսեր մը եւ այն ալ Յուստինոսի հետ է որ կը խօսիս„. որուն վրայ Մեբոդ աղէկ գէշ ինք զինքն արդարացընել ուզեց, թարգմանին սխալ հասկցողութիւնը յառաջ բերելով[4]։ Այսպիսի բա-

---

1 Մենանդր Հատ. 15, 16 (220, 222)։
2 Μεβώδης.
3 Մենանդր Հատ. 17 (224)։
4 Մենանդր անդ։

նոնց օգնել չկրցած՝ ապստամբութիւնը շուտով եւ արիւնահեղութեամբ ճզմուած էր. իսկ առաջնորդները բազմաթիւ ազնուական քրիստոնեայ Հայերու հետ Բիւզանդիոն փախչելով՝ կայսեր պաշտպանութեան ապաւինած էին, որ նոյն իսկ երդմամբ խոստացած է եղեր անոնց, զանոնք եւ ոչ մէկ պարագայի տակ Պարսից մատնել:

Եթէ Յուստինոս կարծած չըլլար, որ Պարսից դէմ պատերազմի մը միջոցին իբր դաշնակից պիտի ունենայ Թուրքերը, թերեւս խաղաղութիւնը աւելի յապաղէր:

Թուրքերը Հայաստանի յաղթելէն վերջը՝ իրենց իշխանութիւնը տարածեցին Ոքսոսի հարաւային կողմը, մինչեւ Խորասան, մինչեւ Պարսից սահմանին կից: Իրենց մեծ խանը (Խաքան), Յոյներէն Սիլզիբուլ, իսկ արեւելեան աղբիւրներու մէջ Սինդջիբու[1] կոչուած, հասարակաց թշնամւոյն դէմ նիզակակցիլ առաջարկած էր կայսեր, եւ Յուստինոս յօժարակամ յանձն առած էր դաշնաւորութիւնը: Անուհետեւ կը յուսար Պարսկաստանի վրայ յարձակիլ երկու կողմանէ, հիւսիսէն եւ հարաւէն եւ նոյնին կործանումը կը նախատեսէր: Այսպէսով եղաւ, որ առանց այլեւայլի պատերազմ որոշում տուաւ[2]:

---

1 Σιλζίβουλος ὁ τῶν Τούρκων ἡγεμών. Մենանդր Հատ. 10 (205): Ուրիշ տեղեր գ. օր. Հատ. 18 (215) զայն Διζάβουλος կ'անուանէ. Տաբարիի քով 158, անուան արաբական ձեւը նախադրեալ անուան ստուգութեան կը վկայէ:

2 Մենանդր Հատ. 18—22 (225–230) ընդարձակ կը

իսկ Խոսրով իւր ալեւոր տարիքը ի նկատ առնելով՝ իրօք կը բաղձար խաղաղութիւնը պահել եւ գժտութենէ խուսափիլ։ Ցոյց տալու համար, որ հաստատուած դաշանց մնալուն կողմն է, հայկական ապստամբութիւնը չզսպած՝ Սեբուխտը[1] կայսերական արքունիք խաւրեց, պայմանաժամը լրացած առաջին տարեվճարն ընդունելու։ Սակայն Յուստինոս այս պատգամաւորին դէմ յայտնի քամահանք ցոյց տուաւ։ Արդէն իսկ առաջին ունկնդրութեան ատեն պատգամաւորը դժբախտութիւն ունեցաւ, երկրպագութեան ատեն բարձր պարսկական խոյրը գետին ձգելու, որ իբր գէշ գուշակութիւն մ'ընդդէմ Պարսից մեկնուեցաւ[2]։ Պայմանաժամը լրացած վճարքին տուչութիւնը կայսրը բացէ ի բաց մերժեց, ըսելով թէ բարեկամութիւնը դրամով չէր գնուիր։ Երբ խօսքը Հայաստանի վրայ եկաւ, պատգամաւորին յայտնեց, որ ինքը Հայերն իւր պաշտպանութեան տակ առած է իբր դաւանակիցներ, եւ ամէն դիւանագիտական ձեւակերպութիւն մէկդի թողլով՝ սպառնական ձայնով գոչեց անոր երեսին, որ եթէ Խոսրով Հայոց դէմ մատն իսկ շարժելու ըլլայ, ինքը անոր դէմ պիտի արշաւէ, պանի վար առնէ եւ Պարսից վրայ ուրիշ թագաւոր մը դնէ[3]։

---

պատմէ Զեմարքոս դեսպանին պատասխանները. որ Յուստինոսէն Թուրքերուն խաւրուեցաւ։

1 Σεβόχθης. Ըստ Մենանդրի Հատ. 36 (239) առիթա- քրիստոնէից բարեկամ էր. եթէ ոչ ինքնին քրիստոնեայ։

2 Մենանդր անդ։

3 Մենանդր անդ։

Ակնյայտնի էր, որ սոյն պատերազմը կը հրատարակուէր։ Խաղաղութեան եղծումն այս անգամ կայսեր, ոչ թէ Պարսից կողմանէ, տեղի կ'ունենայր։

Այսպէսով սկսաւ 572ին, երրորդ դարուն մեծ հռովմէական-պարսկական պատերազմը։

Պատերազմին սկզբնաւորութիւնը կայսեր սնոտիապարծ նախագուշակութեանց համապատասխան չեղաւ։ Թուրքերուն օգնութիւնը, որուն վրայ յոյսը դրած էր, տեսնուեցաւ թէ ոչինչ էր։ Իւր ոչ ըստ բաւականի սպառազինուած բանակները պարտութիւններ կրեցին, բայց ամէնէն աւելի ծանր կորուստ մ'եղաւ երկարամեայ պաշարմանէ վերջ ամուր Դարասի Խոսրովէն առնուիլը[1], որ իւր յառաջացած տարիքին չնայելով՝ արշաւանքի վշտակրութիւններէն չէր խուսեր։

Յուստինոսի վաղաժամ գործառնութիւնը պետութեան ուրիշ կնճիռներ ալ պատճառեց, վասն զի պարսկական պատերազմէն զատ, հիւսիսէն սկսաւ Աւարներու արշաւանք մը սպառնալ, մինչ անդին Լոնգոբարդացիք, որոնք Իտալիայի մէջ յաղթանակաւ յառաջ կ'երթային, այնչափ քրտինքով ձեռք բերուած հռովմէական ստացուածքները ծանրապէս կը վտանգէին։ Այսպիսի պարագաներու տակ բախտ համարելու էր, որ ծանր խօթացած կայսեր տեղ, Կեսարու-

[1] Եւագր Պատմ. 5. 10. Թէոփիլ. 3. 5 (117). Թէոփանէս 247։

թեան բարձրացած անձնապահապետը, քաջն Տիբերիոս, իւր խնամակալ՝ Սոփիա կայսրուհւոյն հետ կառավարութեան սանձը ձեռք առաւ։ Իրաց վիճակը ճշգրտիւ դատելով՝ Յուստինոսի ընդդէմ Պարսից բռնած անխոհեմ քաղաքականութիւնը թող տուաւ եւ սկզբանէ իսկ դարձեալ խաղաղական յարաբերութիւն հաստատելու աշխատեցաւ։ Առանց պատերազմի պատրաստութիւնն ընդհատելու, ջանաց նախ եւ յառաջ զինադադար մը ձեռք բերել եւ Խօսրով այս բանիս մէջ անոր ընդառաջ եկաւ, այնու որ անոր — իրօք է 45.000 ոսկւոյ վճարքի մը փոխարէն — մէկ տարուան համար զինադադար շնորհեց[1]։ Ասոր յաջորդեցին ուրիշ բանակցութիւններ, որոնցմով զինադադարը յաջորդ երեք տարիներու (575—578) համար ալ արժեց։ Այս պատճառաւ տարուէ տարի վճարելի 30.000 ոսկեդրամները 562ի դաշանց մէջ որոշուած վճարքներու կատարումը եւ շարունակութիւնը կրնային համարուիլ, որով ըստ ինքեան ամօթի բան մը չկար Հռովմայեցւոց համար[2]։ Խօսրով այս տարիներու մէջ ալ հետեւեցաւ իւր՝ Յուստինիանոս հանդէպ գործադրած սովորութեան, այսինքն զինադադարը ամբողջ պատերազմի մէջ գտնուող երկիրներու վրայ չտարածել։ Զինադադարը՝ ինչ-

---

[1] Մենանդր Հատ. 38 (240)։

[2] Մենանդր Հատ. 39, 40 (241)։ Խօսրով զինադադարը հինգ տարուան, Տիբերիոս երկու տարուան համար կ'ուզէր ընել. անշուշտ դրամական հատուցման պատճառաւ. վերջ ի վերջոյ երեք տարուան վրայ միաբանեցան։

պէս յառաջագոյն կ'ըլլար, միայն Արեւելքի, բայց ոչ Հայաստանի համար արժելու էր. Հոս պատերազմական վիճակը մնաց։ Խոսրովի համար այս բացառութիւնը շահաւոր չեղաւ, վասն զի Հռովմայեցի զօրավարը կրցաւ պարսկական Հայաստանի եւ Նաեւ Վրաստանի մէջ հաստատուն դիրք գրաւել, Պարսիկները մերժել եւ սուղ ապագայ խաղաղութեան համար անվնասութեան ծանրակշիռ կռուան մը ձեռք անցընել։

Այս երեքամեայ զինադադարի միջոցին անդադար բանակցութիւններ տեղի կ'ունենային խաղաղութեան մը յանգելու համար։ Նաեւ ասոնց վրայ Մենանդր հաւատարիմ եւ կ'երեւայ թէ նախնական տեղեկութիւններէ առած լուրեր կու տայ, որոնց քով ուրիշ աղբիւրներ շատ կարեւոր չեն[1]։ Տեսնուեցաւ, որ բանակցութիւնները դժուարութեանց կը բախէին, վասն զի հայկական պատերազմի ասպարէզին վրայ փոփոխուող դէպքերէն եւ մերթ հռովմէական ու մերթ պարսկական զինուց յաջողութիւններէն կ'ազդուէին։ Ստոյգ է Խոսրով, որչափ որ Յուստինոս կ'ատէր, Տիբերի հանդէպ անձնական հակառակութիւն, եւ անոր հետ համաձայնելու ընդդիմութիւն ալ չունէր, սակայն եւ այնպէս բուն պարսկական ոճ բանեցընելով՝ իւր պահանջները կրցածին չափ բարձրացուց եւ ջանաց ամենապարարտ պատառը կորզել։ Վրայէն նետելու համար այն խիստ տհաճութիւնը, որուն

---

[1] Մենանդր Հատ. 41 եւ յջ. Թէոփիլ. 3, 12 յջ. Թէոփանէս 247 յջ.։

առարկայ պիտի ըլլար, եթէ իր կողմանէ խաղաղութիւնը աւրուէր, իր փոխանորդներն աբեւելեան դիւանագիտութեան բոլոր արուեստներով զինեց, ինչպիսի են՝ ամբարտաւանութիւն, դիտաւորեալ յապաղում, խորամանգութիւն, խարդախութիւն, խաբէութիւն, մինչեւ իսկ յայտնի ստախօսութիւն, սակայն առանց վերջնական որոշումը ձեռքէն հանելու։ Իւր մտերիմ լիազօրն էր յառաջագոյն յիշուած Մեբոդը, որ Հռովմայեցի պատգամաւորներուն շատ հաճոյակատարութիւն ցոյց տուաւ եւ քանիցս իւր հպարտութիւնն ու ամբարտաւանութիւնը զգացընել տուաւ անոնց[1]։

Իրեն դիմաց աչքի կը զարնէին գլխաւորաբար երկու Հռովմայեցի լիազօրներ, Տրայանոս սուրբ պալատան Վերակացուն (Quaestor sacri palatii) եւ կայսերական անձնական բժիշկը Զաքարիա, որ Տիբերի մտերմաւոր վստահութիւնը կը վայլէր եւ անկէ շատ անգամ դժուարին առաքելութեանց համար գործածուած էր[2]։ Որչափ ալ դիւանագիտական յաջողակութեան եւ ճարտասանական տաղանդի մէջ Պարսից խաղաղութիւնը միջնորդող պետորսէն վար ըլլային, այսու հանդերձ բանակցութիւնները մարդուս մէջ այն համոզումը կը գոյացընեն, որ կարելի եղածին չափ իրենց ինքնակալին եւ եր-

---

[1] Մենանդր Հատ. 50 (258)։ Ի մէջ այլոց յանձն չէր առնուր փնտոգոգարի համար ամավճարը սահմանի վրայ ընդունիլ, այլ կը պահանջէր, որ Հռովմայեցիք իրենց վասնդողէ զայն Մծբին բերեն։

[2] Մենանդր Հատ. 33 եւ յլ.։

կրին շահերն ըմբռնած, քաջութեամբ եւ օրինաւոր զէնքերով իրենց դատը պաշտպանած էին, եւ թէ իրենց վերագրելու չէ իրենց ջանից ապարդիւն մնալը։ Սակայն ընդհանուր տպաւորութիւնը կը մնայ այն, թէ Հռովմայեցիք թէպէտ պատերազմական յաջողութիւններ ձեռք բերած՝ այսու հանդերձ չէին կրցած Պարսից ձեռքէն ընդունելի խաղաղութիւն մը կորզել եւ թէ Արեւելեան հռովմէական պետութեան վարկը (Prestige)՝ համեմատելով Յուստինիանու ժամանակին հետ, շատ ինկած էր։

Բանակցութիւնները ըստ սովորականին սահմանի վրայ՝ Մծբնայ եւ Դարասի մօտերը տեղի ունեցան, բայց արդէն իսկ բանակցութեան վայրին ընտրութիւնը նախանձայոյզ վիճաբանութեանց դուռ բացաւ[1]։ Այնուհետեւ սկսան բանակցութիւններն երկարաշունչ ամբաստանութիւններով պատերազմին պատճառին, խաղաղութեան աւրուելուն ո՛ր մասին վերագրուելուն վրայ, բացատրութիւններ, որ լոկ տեսական արժէք մը չէ որ ունէին, ինչու որ Պարսիկներն այս խնդիրը Հռովմայեցւոց դէմ ճնշում բանեցնելու իբր միջոց ձեռք առած էին[2]։

Խաղաղութեան պայմաններուն վրայ խօսուած ատեն Մեբոդ երեք պահանջ դրաւ. 1. 562ի դաշանց մէջ սահմանուած տարեկան գումարներուն վճարման շարունակութիւնը, 2. պարսկային Հայաստանէն եւ Վրաստանէն ելլել

[1] Մեն. Հտ. 46 (248)։

[2] Մեն. Հտ. 47 (249)։

գաղթելու այս թոյլտուութենէն օգտուիլ չուզող գրեթէ պիտի չըլլայ. իւր ցանկութիւնն էր ապստամբութեան պարագլուխները ձեռք անցընել, անոնցմէ վրէժ լուծելու համար[1]:

Հայաստանէն եւ Վրաստանէն ելլելնուն փոխարէն Հռովմայեցիք ալ կը պահանջէին Դարաս ամրոցին ետ դարձուիլը, որուն դարձեալ ձեռք անցուիլը Տիբեր պետութեան պաշտպանութեան, ինչպէս նաեւ տեւական խաղաղութեան մը օգտին համար այնչափ ծանրակշիռ կը համարէր, որ Զաքարիայի իշխանութիւն տուած էր, նոյնը չափաւոր դրամական գումարով մը գնելու: Մերոդ Հռովմայեցիներուն պահանջը լրացընելու վրայ էր, երբ այն լուրը թէ Հռովմայեցի գունդերը պարտութիւն մը կրած են, մէկէն ի մէկ իրաց վիճակը փոխեց: Ամբարտաւան կերպով յայտարարեց Պարսիկը, թէ իւր թագաւորը յաղթական զէնքերով գրաւած Դարասն երբեք ետ պիտի չդարձընէ[2], եւ Խոսրովի այն սպառնալիքը — թէ տակաւին չվերջացած զինադադարը նոյնին համար վճարուած ստակին մասամբ ետ դարձուելուն դիմաց պիտի առնէ եւ մինչեւ ցայժմ պաշտպանուած Հռովմայեցի երկիրներուն դէմ պատերազմ պիտի սկսի, — յառաջ բերաւ իւր վերջին միջոց Հռովմայեցի պատգամաւորներուն վախ ազդելու[3]: Այս սպառնալիքն անշուշտ ծանրութեամբ եղած

1 Մեն. անդ 250:
2 Մեն. անդ:
3 Մեն. անդ 251:

ըլլալու չէ։ Վասն զի քիչ մ'ետքը Մեթոդ եւ Զաքարիա մէկալ բոլոր մասնակիցներն ի բաց առնելով՝ գաղտնի խորհրդակցութեան մը ժողվուեցան, որ եթէ հնար է ուղղակի միաբանութիւն մը տեղի ունենայ մէջերնին վէճի առկ եղող խնդիրներու վրայ։ Երբ նոյն միջոցին Զաքարիա աւելի պատուաւոր անձի քան դիւանագէտի խոհեմութեամբ հասկըցուց, թէ Տիբեր հակառակ չէ Գարասի համար դրամական վճարք մ'ընել, խորամանգ Մեթոդ այս վստահացուած ծանուցումը յօգուտ գործածեց, անոր շատ վտանգաւոր դարան մը լարելու։ Թագաւորը Գարասը ստակով չծախելուն՝ առաջարկեց այս խնդիրը խաղաղութեան պայմաններէն դուրս հանել, միայն թէ սուրբ երդումներով երաշխաւոր կ'ըլլար, որ եթէ այժմ խաղաղութիւնը կնքուէր, թագաւորը Տիբերի խնդրելովը Գարասն անոր իբր պարգեւ կը թողուր[1]։ Ի հարկէ այս բանիս մէջ կար այս գաղտուկ խորհուրդը, թէ Հռովմայեցիք նախ պարսկային Հայաստանէն եւ Վրաստանէն առանց պատերազմի քաշուելէն վերջը՝ անշուշտ Գարասի համար ալ կը բաւար լոկ աչք գոցել մը։ Զաքարիա խորհուրդը կռահեց, մերժեց տարապայման բաղձանքը եւ ասով օդ ելաւ առանձնական խօսակցութիւնը։

Այսպէսով բանակցութիւնները քայլ մ'իսկ յառաջ չգացին։ Այն ատեն խօսքով իւր մտերմին Մեթոդի խորհրդովը միտքը դրաւ հանգոյցը բռնութեամբ լուծել։ Որոշեց զինա-

1 Մէն. 251։

դադարը չվերջացած աւրել եւ Եփրատի երկիրներու վրայ թշնամութիւնները նորէն սկսիլ[1]։ Այսով ապարդիւն մնացած խաղաղութեան ժողովը վերջացաւ։ Վճիռը մնացած էր զինուց բախտին (ամառ 578)։ Սակայն Խոսրով եւ իւր զօրավարները — որոնց մէջ նաեւ Մեբոդ — դառնապէս խաբուեցան. Տիբերիոսէն Արեւելք խաւրուած ամենաքաջ զօրավարը՝ ապագայ Մարկիանոս կայսրը, անոնց այնպիսի ախոյեան մը հանդիսացաւ, որ զանոնք սահմանէն դուրս վտարեց, Տիգրիսն անցնելով Պարսկաստան մտաւ եւ հարուստ Արզն գաւառը եւ բազմաթիւ ամուր տեղեր գրաւեց[2]։

Այսպէսով կացութիւնը էապէս ի շահ Հռովմայեցւոց փոխուեցաւ։ Այս եւ իւր բազմամեայ տարիքին զգացումը եւ իւր մարմնոյ տկարութիւնը, ինչպէս նաեւ գահը խաղաղութեամբ իւր պայազատին թող տալու ցանկութիւնը դրդեցին զԽոսրով եւ Յուստինոսի մահուընէն վերջը (Հոկտ. 578) գահը բարձրացած Տիբերիոսին հետ յարաբերութեան մէջ մտնել։ Իւր Փերոզդատ պատգամաւորը 578էն 579 մտնող ձմեռը կայսեր բերաւ հաշտարար ոճով գրուած թուղթ մը, յորում Խոսրով զՏիբեր կ'ապահովէր իւր խաղաղասիրութեան վրայ, Հայերը յանձնելու համար անոր արդարամտութեան կը դիմէր եւ անկէ ամենայն բա-

1 Մեն. Հատ. 50 (253, 254)։ Զինադադարը տակաւին 40 օր տեւելու էր, Թէոփիլ. 3. 15։

2 Մեն. Հատ. 51–53 (254). Թէոփիլ. 3. 15։

յանձնման խնդիրը, եւ այս՝ վերջ ի վերջոյ խաղաղութեան արգելք չէր կրնար ըլլալ։ Սակայն Հռովմայեցի հրեշտակները սահմանը չանցած՝ լուր առին, որ Խոսրով Թագաւորը մեռած եւ իւր Որմիզդ որդին իբր յաջորդ թողուցած է[1]։ կարծելով կայսրը, որ ասիկա իւր հօրը սկսած բանակցութիւնները յառաջ պիտի տանի, դեսպաններուն հրամայեց իրենց ճամբան շարունակել։

Որմիզդին նկարագիրը Յոյներէն շատ տխուր գոյներով կը նկարագրուի. ըստ անոնց Որմիզդ իւր վրայ կը միացընէր բռնակալի մը գէշ յատկութիւնները. հպարտութիւն, ամբարտաւանութիւն, մեծամտութիւն[2]. քիչ մը նուազ աննպաստ է արեւելեայց վճիռը. հպարտութիւն եւ անագորոնութիւն ասոնք ալ կու տան անոր[3]։ Արհամարհանքի նշանակ մը, որով Հռովմայեցիներուն հետ սովոր էր վարուիլ, էր զանց ընելը իւր գահակալութեան ծանուցումը կայսեր, ըստ ազգաց իրաւանց, բարուց ու սովորութեան[4]։ Պատգամաւորութեան առաքումը եւ գերեաններու արձակումը տկարութեան նշան համարեցաւ եւ որոշեց զգացընել կայսեր իւր առաւել զօրութիւնը։ Արդէն դէպ ի պարսկական արքունիք՝ ճամբան խոչընդոտներ յարու-

---

1 579 գարնան ἦρος ἀρχομένου, Թէոփիլ. 3, 16 (144)։

2 Թէոփիլ. 3, 16. Մեն. Հակ. 55։

3 Նէօլդեկէ. Տաբարի 265, ծնթ.։

4 Մեն. Հակ. 55 (256)։

յուեցան դեսպաններուն[1]. դժուարութեամբ միայն կրցան ունկնդրութիւն մ'ընդունիլ Թագաւորէն: Արհամարհանքով ու քամահանքով լսեց կայսեր առաջարկները: Հայրը 'կրնայ Դարասը ետ տալու պատրաստ գտնուած ըլլալ, ինքը ոչ Դարասը եւ ոչ ալ հօրը գրաւած որեւէ տեղ մը կրնայ թող տալ: Հռովմայեցիք թող գիտնան, որ ինքը միայն այն ատեն խաղաղութիւն կու տայ իրենց, երբ լնուն ինչ որ յառաջուան դաշինքէն առկախ մնացած է: Թէ դեսպանները Տիզբոնի մէջ եւ ետ դառնալու ատեն ինչ անձնական նախատինքներ ընդունեցան, ուրիշ տեղ պատմուած է[2]:

Տիբերիոս հասկցաւ, թէ Որմիզդի պէս հակառակորդի մը հետ շատ դժուարին է միաբանիլ եւ թէ առժամս խաղաղութիւն ընելու յոյսը թող տալու է: Նախահօգ զգուշութեամբ պատերազմը շարունակելու պատրաստութիւնները տեսած էր եւ այժմ Մաւրիկիոսին հրամայեց, արշաւանքը դարձեալ սկսիլ: Սակայն կայսրը Մաւրիկիոսի յաջողութեանց վրայ գոհ սրտով ուրախանալ չէր կրնար, վասն զի Աւարներուն յարձակումները իրեն արգելք կ'ըլլային իր ամբողջ զօրութիւնը քովէ քով բերելով Պարսկաստանը ընկճելու: Այս է արդէն Բիւզանդական պետութեան հանապազորդ անձկութիւնը, այնպէս որ ստիպուած էր միեւնոյն ժամանակ արեւելքի, հիւսիսի եւ արեւ-

---

1 Մեն. անդ.

2 Վերը, էջ 33.

մուտքի կողմէն ինք զինքը պաշտպանել թշնամեաց դէմ. առանձին առանձին կրնար խորտակել իւրաքանչիւրը, բայց ամէնուն հետ միանգամայն կռուելու զօրութիւն չէր մնացած վրան։ Յուստինիանոս ծրագրած եւ Նպաստաւոր պարագայից տակ անկէ վերականգնուած Հռովմէական տիեզերական պետութիւնը, ա՛լ անկարելի էր իր պայազատներուն առեն պահել։ Անոր այս տկարութեան գիտակցութեամբն է, որ կը մեկնուի, թէ Տիբերիոս չնայելով նախապէս առած անհաճոյ փորձին, դարձեալ փորձեց, խաղաղութեան ճամբով գտնէ՝ Արեւելքի մէջ հանգիստ վայլել։ Մինչդեռ — յընթացս 581 տարւոյ — երկու բանակները ճակատ առ ճակատ կեցած էին, Հռովմայեցիք Կոստանդինի քով, իսկ Պարսիկները Մծբնայ մօտ, երկու ինքնակալներուն բանագնացները՝ յոգուտ գործածեցին դադարը, զէնքի որոշումէն յառաջ խաղաղութեան վրայ կարծեաց փոխանակութիւն մ'ընելու։ Իբր կայսեր փոխանորդ դարձեալ Զաքարիա եկած էր. Որմիզդ, որ Հռովմայեցւոց յաջողութիւններէն քիչ մը վեհերոտ դարձած էր, փորձառու գործակատար մը զԱնդեկան խաւրած էր։ Դարասի շրջակայքը ժողովքի նստան[1]։

Եթէ Տիբեր Պարսից պատրաստակամութեան վրայ յոյս դրած էր, խաբուեցաւ։ Անդեկան յայտնապէս ըսաւ, թէ ամէն կողմանէ թշնամիներով նեղուած Հռովմայեցիք աւելի խաղա-

[1] Մենանդր Հտ. 60 (260, 262)։

ղութեան պէտք ունէին քան Պարսկաստան, որ միայն մէկ ախոյեան ունի չափուելու եւ ամենեւին ետ չկեցաւ յառաջուան պահանջումներէն՝ որ էին տարեկան գումարներուն վճարում, պարսկական երկիրներու ետ տրուիլը եւ Հայ փախստէից յանձնում. Նմանապէս մերժեց Դարասը ետ դարձընել։ Այսպիսի պայմաններ կը նշանակէին հռովմէական պետութեան Պարսկաստանի կամքին բոլորովին ենթարկում, եւ Զաքարիայի ուրիշ բան չէր մնար, բայց եթէ այսպիսի չափազանց պահանջումները կտրուկ եղանակաւ մերժել։ Արագ վերջողութեան ստիպելու համար զԶաքարիա, Պարսիկը դարձեալ խորամանգ խաբէութիւն մը ձեռք առաւ։ Փոշեթաթախ հեծեալ մ'երեւցաւ իբր թէ լուր բերելով՝ թէ պարսիկ բանակը ալ կարելի չէ բռնել եւ թէ զարնուիլ կ'ուզեն։ Զաքարիա, որ խաբէութիւնն անմիջապէս հասկըցաւ, բանակցութիւնը խզեց եւ Մաւրիկիոսին իմացուց, թէ յարձակումը ալ չյապաղէ[1]։

Պատերազմը դարձեալ բորբոքեցաւ եւ Որմիզդի ամբողջ կառավարութեան ժամանակ տեւեց։ Ասոր վրայ երբ վերջնոյս վար առնուելէն ու սպանուելէն ետքը իւր յաջորդը Խոսրով Բ․ Մաւրիկիոս կայսեր օգնութիւնը կոչելու ստիպուեցաւ եւ միայն ասոր օգնութեամբ կրցաւ Սասանեան գահին ելլել, ինքնին կը հասկըցուի, որ այսուհետեւ Հռովմայեցւոց ոչ աննպաստ խաղաղութիւն մը տեղի պիտի ունենար։ Եղած

---

1 Մեն. անդ։

օգնութեան համար խոստացուած վարձքը, Մարտիրոսաց քաղաքին ու Դարասի յետս դարձուիլը, արդէն տրուած էր։ Դարասը, որուն համար այնչափ կռիւ եղած էր, Խոսրով հանդիսական հրովարտակով կայսեր տուած եւ բերդին բանալիներն առանձին դեսպանի մը ձեռքով անոր խաւրած էր[1]։ Որեւէ դրամական հատուցման խօսք անգամ չկար։ Այսպէս կարելի եղաւ երկու կողմերուն համար ալ ընդունելի խաղաղութիւն մը կնքել (591)[2]։ Այս դէպքերուն վրայ ուրիշ աղբիւրով խօսած ըլլալով[3], հոս այլ եւս անոնց վրայ չենք ծանրանար։

Երկու պետութեանց մէջ խաղաղական յարաբերութիւնները միայն մինչեւ Մաւրիկիոսի մահը տեւեցին (602)։ Անկէ վերջը դարձեալ պատերազմ բացուեցաւ։ Այս վերջին, քառորդ դար տեւող պատերազմներուն պատահմունքները — Խոսրովի բանակներուն ամբողջ յառաջակողման Ասիան ասպատակելը, Ասորիք ու Եգիպտոս գրաւելն եւ նոյն իսկ պետութեան մայրաքաղաքին ծանրութեամբ սպառնալը, յետոյ Հերակլ կայսեր փառաւոր արշաւանքներով (623—628) մինչեւ պարսկական հողին խորքերը թափանցելը եւ Խոսրովին իյնալէն վերջը՝ անոր յաջորդին խաղաղութիւն թելադրելը — այս ուրուագծին շրջանակէն դուրս կը մնան։

---

1 Թէոփիլ. 5, 3 (193)։

2 Թէոփիլ. 5, 15 (216)։

3 Տես վերը էջ 42։

Պարսից հետ դարաւոր ոգորումէ մը վերջը՝ Բիւզանդիոն յաղթող հանդիսացած էր։ Սակայն երկու պետութիւններն ալ այս արիւնահեղ պատերազմներով բոլորովին ուժասպառ եղած էին եւ արդէն անոնց դէմ Նոր վտանգաւոր ախոյեան մը կանգնած էր՝ Մարգարէին վարդապետութեամբը քաղաքականապէս ի մի ձուլուած արաբացի ժողովուրդը եւ ուժեղ կերպով բարձրանալ ճգնող եւ իրենց կրօնը տարածելու եռանդնոտ ու աշխարհակալութեան տենչացող Իսլամը։ Առանձնայատուկ ողբերգական բախտ մը այնպէս բերաւ, որ գրեթէ միեւնոյն ժամանակ, մինչ Պարսից պետութիւնը Իսլամի հարուածներուն տակ տապաստ կ'իյնար, իր յաղթողն ալ, Հերակլ կայսրը Իսլամի ձեռքը կը թողուր իր ասիական եւ ափրիկեան ամենագեղեցիկ գաւառները։ Եարմուկի ճակատը (630) Ասորիքի եւ Ս. Երկրին վիճակը կ'որոշէր, նոյն տարին տրուած Կադիսիեայի ճակատն ալ Սասանեան պետութիւնը կործանման դուռը կը հասցնէր։

